ЛЕНИН



Ընկ. Կ. Ե. ՎՈՐՈՇԻԼՈՎԸ համբուրում է հանդիսավոր նիստը ողջունելու եկած պիոներներից ամենափոքրին։

№ 8 1959 թ.
ՕԳՈՍՏՈՍ




ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
31-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԱՏԱՆԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

Ցնծում էր հայ ժողովուրդը։ Ցնծում էր տոնականորեն զարդարված Երևանը։

Ժողովուրդը ալ դրոշներով, տրանսպարանտներով, գունագեղ ծաղիկներով էր զարդարել պողոտաները, փողոցներն ու հրապարակները։

Սովետական Հայաստանը գյուղատնտեսության ասպարեզում ձեռք բերած նվաճումների համար 1958 թվականի դեկտեմբերի 29-ին արժանացավ կառավարական բարձրագույն պարգևի՝ Լենինի շքանշանի։

Եվ ահա, Լենինի շքանշանը հանձնելու համար Հայաստան էր ժամանել ՍՄԿՊ Կենտկոմի Նախագահության անդամ, ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Նախագահ Կ. Ե. Վորոշիլովը։ Շքանշանակիր Հայաստանի ժողովուրդը անսահման ցնծությամբ էր դիմավորում իր թանկագին հյուրին։



*Ելույթ է ունենում ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Նախագահ ընկեր Կ. Ե. ՎՈՐՈՇԻԼՈՎԸ։*

Լուսանկարները՝ Գ. ՉՈՒԼԱԴՅԱՆԻ

## ԵՐԳ ՑՆԾՈՒԹՅԱՆ

*Ս. ՄԿՐՏՉՅԱՆ*

Դու հերոսացար,
Երկիր իմ անգին.
Արև է պայծառ
Վառվում քո կրծքին։

Զուգվել ես շքեղ՝
Վարդ ու շուշանով,
Լենինի լուսե
Շքանշանով։

Ցնծում ենք հպարտ
Մենք քո ջերմ գրկում,
Ուրախ ու զվարթ
Քո գովքն ենք երգում։

Շնորհակալությո՛ւն
Մեծ պարտիային մեր,
Որ տվել է քեզ
Արժանի նվեր։

# ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԵՎ

*Ս. ՊՈՂՈՍՅԱՆ*

1947 թ. հուլիս... Չեխոսլովակիայի մայրաքաղաք Պրագայում են հավաքվել աշխարհի 71 երկրների երիտասարդության և ուսանողների 17 հազար պատվիրակներ՝ մասնակցելու իրենց առաջին փառատոնին, խաղաղության և բարեկամության տոնին։

Այդ անմոռանալի օրերին փառատոնային Պրագայի փողոցներում, համերգային դահլիճներում և սպորտային հրապարակներում անսասան վճռականությամբ հնչեց երիտասարդության կամքը. «Կորչի՛ պատերազմը», և ամենուրեք տարածվեցին սովետական կոմպոզիտոր Ա. Նովիկովի երգի խրոխտ հնչյունները (այդ երգը հետո դարձավ դեմոկրատական երիտասարդության հիմնը).

*Մեզ բոլորիս ձայնակցում է*
*Ողջ աշխարհը մեծ,*
*Եվ այդ երգը չի մահանա,*
*Միշտ կապրի, միշտ կապրի,*
*միշտ կապրի։*

Պրագայի փառատոնի մասնակիցները տարան այդ երգը իրենց հետ, տարածեցին բոլոր



# ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՆ ՖԵՍՏԻՎԱԼԸ

Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

երկրներում, և սպիտակաթև աղավնու հետ այն ճախրում է այժմ երկրից-երկիր, որպես խաղաղության խորհրդանիշ:

Պրագայի ֆեստիվալը ցույց տվեց, որ երիտասարդության այդ տոնախմբությունը մեծ նշանակություն ունեցավ խաղաղության համար մղվող պայքարում: Ահա թե ինչու, տարբեր ազգությունների պատկանող, միլիոնավոր երիտասարդներ ձգտեցին նորից հանդիպել միմյանց, և մեկը մյուսի հետևից տեղի ունեցան ևս հինգ ֆեստիվալներ՝ Բուդապեշտում, Բեռլինում, Բուխարեստում, Վարշավայում և Մոսկվայում:

Այդ ֆեստիվալներից ամենամեծը Մոսկվայի ֆեստիվալն էր, որին աշխարհի 131 երկրներից մասնակցում էին 34 հազար պատանիներ ու աղջիկներ:

Լինել Սովետական Միությունում, ծանոթանալ սովետական մարդկանց աշխատանքի և կյանքի պայմանների հետ՝ աշխարհի տասնյակ միլիոնավոր մարդկանց ամենանվիրական ցանկությունն է: Մոսկվայի ֆեստիվալի ընթացքում մեր Հայրենիքի մայրաքաղաքն էին եկել աշխարհի տարբեր երկրների մոտ 2000 թղթակիցներ, մամուլի, ռադիոյի, կինոյի, հեռուստատեսության ներկայացուցիչներ:

Մոսկվան սիրով բացեց իր դռները արտասահմանյան հյուրերի առաջ, նրանց հնարավորություն տվեց ծանոթանալու սովետական մարդկանց խաղաղ, ստեղծագործ առօրյային: Այդ կապակցությամբ ԱՄՆ-ի պատվիրակ Գիլբոան ասաց. «Ես ճանապարհորդել եմ աշխարհի շատ երկրներով և շատ բան եմ տեսել, բայց ոչինչ չեմ տեսել ավելի հոյակապ, քան Մոսկվայի բնակիչների հանդիպումը ֆեստիվալի մասնակիցների հետ»:

Տեսնելով Սովետական Միության ձեռք բերած հսկայական նվաճումները, իտալական գրող Թոմազո Ֆեորը հիացմունքով ասաց.

«Ես տեսա Մոսկվայի պոեզիան, իրոք որ պոետական սկզբնավորումով է բնութագրվում ձեր քաղաքը: Այդ աշխատանքի պոեզիան է, դուք կարողանում եք աշխատել և աշխատում եք սքանչելի. ես այդ ինքս տեսա. ես կգրեմ այդ պոեզիայի մասին, անպայման կգրեմ»:

Կես ամիս շարունակ Մոսկվայի փողոցներում լսվում էին բազմալեզու խոսակցություններ, առավոտից մինչև երեկո հնչում էր երգը, չէին դադարում խաղերն ու պարերը, սպորտային միջոցառումները: Ամեն օր տեղի էին ունենում մոտ 400 միջոցառում՝ միտինգներ, հանդիպումներ, ըստուգատեսներ, համերգներ, էքսկուրսիաներ և այլն:

Մոսկովյան ֆեստիվալը խաղաղության ուժերի մի հսկա ցույց էր, և դեռ չէին լռել այդ ֆեստիվալի երգերը, դեռ չէր մարել խաղաղության խարույկը, Կիևում հավաքված Դեմոկրատական երիտասարդության համաշխարհային ֆեդերացիայի 4-րդ կոնգրեսը որոշում ընդունեց 1959 թ. հուլիսին Ավստրիայի մայրաքաղաք Վիեննայում հերթական 7-րդ ֆեստիվալը անցկացնելու մասին:

— Դեպի Վիեննա, դեպի ֆեստիվալ,— այս կոչը կայծակի արագությամբ տարածվեց աշխարհով մեկ, և երիտասարդության հայացքն այս անգամ արդեն ուղղվեց դեպի Վիեննա, ուր կապույտ Դանուբի ափին, Մոցարտի և Շուբերտի, Հայդնի և Շտրաուսի հայրենիքում նորից կհնչի խաղաղության, բարեկամության և երջանիկ ապագայի





Նրանք մտերմացան Մոսկվայում, ֆեստիվալի օրերին:

երգը, ուր երիտասարդությունը մեկ անգամ ևս կցուցադրի իր վճռականությունը՝ պայքարելու կայուն և տևական խաղաղության համար:

Ինչպես նախորդ բոլոր ֆեստիվալները, այնպես էլ 7-րդ ֆեստիվալը, բազմամիլիոն բարեկամներից բացի, ունի նաև թշնամիներ, որոնց համար խորթ է ֆեստիվալի, խաղաղասեր երիտասարդության միավորման գաղափարը: Դրանք այն մարդիկ են, որոնք դեմ են խաղաղությանը և պատերազմ են նախապատրաստում, դրանք իմպերիալիստներն ու նրանց կամակատարներն են: Բայց նրանց բոլոր ջանքերը հանդիպելով խաղաղասեր երիտասարդության վճռական կամքին, ջարդուփշուր կլինեն, և երիտասարդությունը նորից ֆեստիվալի կգնա:

Վիեննայի ֆեստիվալին ակտիվորեն մասնակցում է նաև Սովետական Միության երիտասարդության պատվիրակությունը՝ բաղկացած 800 մարդուց. դրանք արտադրության երիտասարդ առաջավորներ են, գրականության և արվեստի շնորհալի գործիչներ, անվանի սպորտսմեններ, երիտասարդական կազմակերպությունների ներկայացուցիչներ և այլն:

Վիեննա են գնացել նաև Սովետական Հայաստանի երիտասարդության ներկայացուցիչները:

Դուք, երեխաներ, Բյուրականի աստղադիտարանի մասին լսել եք, շատերդ եղել եք այնտեղ: Դուք լավ գիտեք այն մեծ գործերի մասին, որ կատարում է այդ աստղադիտարանը՝ ակադեմիկոս Վ. Համբարձումյանի ղեկավարությամբ: Ահա այդ աստղադիտարանում է աշխատում երիտասարդ, տաղանդավոր գիտնական Հ. Թովմասյանը, որն իր աշխատասիրությամբ և համեստությամբ նվաճել է ֆեստիվալի մասնակցի իրավունքը:

Վիեննայի ֆեստիվալային ցուցահանդեսի սրահներում, ուրիշ շատ երկրների նկարիչների գործերի հետ միասին, ֆեստիվալի մասնակիցների ուշադրությանն են ներկայացված նաև մեր ռեսպուբլիկայի երիտասարդ նկարիչների 14 կտավներ:

Եվ ահա այսօր, Վիեննայի հնադարյան փողոցներով, խաղաղության դրոշի ներքո, իրար կողք-կողքի, ձեռք-ձեռքի տված, քայլում են հնդիկ գյուղացին և անգլիացի հանքափորը, չերկասցի կոլտնտեսուհին և ֆրանսիացի նավահանգստային բանվորը, և նրանց միասնական կամքի առաջ նորից փուլ են գալիս պատերազմի հրձիգների օդային ամրոցները:





Գալիս են փոխարինողները:

# ՈՒԺԻ ԵՎ ԳԵՂԵՑԿՈՒԹՅԱՆ ՏՈՆԸ



Սպարտակիադայի դրոշը բարձրացված է...

Զուգափայտերի վրա է Երևանի Մայակովսկու անվան դպրոցի աշակերտուհի Սեդա Խաչիկյանը: Նրա նուրբ, ճկուն ու հավասարակշռված շարժումները հիացնում են հանդիսականներին: Ահա և ելույթ են ունենում Ֆիզկուլտուրնիկների տաք պատանի մարմնամարզիկները: Տեսնելով այդ փոքրիկներին, ոչ ոք չի կասկածում, որ սպորտի վարպետների կողքին աճում է մի հիանալի սերունդ:

Դպրոցականների 13-րդ տրադիցիոն սպարտակիադային մասնակցում էին ռեսպուբլիկայի քաղաքներից ու շրջաններից եկած հարյուրավոր պատանիներ ու աղջիկներ, որոնք մրցում են սպորտի 13 ձևից: Նրանցից ութը սպարտակիադայի ընթացքում սահմանեցին ռեսպուբլիկական ռեկորդներ: Մրցումներում առավել աչքի ընկան Երևանի, Լենինականի, Կիրովականի պատանի սպորտսմենները:

Դպրոցականների տրադիցիոն սպարտակիադան այս տարի գրեթե զուգադիպեց ռեսպուբլիկական 5-րդ սպարտակիադային: Այդ օրերին մայրաքաղաքի սպորտային բազաներում, ստադիոններում, լողավազաններում, հեծանվային տարածություններում ու դահլիճներում ավելի քան հազար սպորտսմենների միջև սպորտի համար պայքար ծավալվեց առաջնության պահպանման և նոր ռեկորդներ սահմանելու համար:

Սպարտակիադայում նորից իրենց հաջողություններով փայլեցին աշխարհին հայտնի հնգամարտիկ Իգոր Նովիկովը, թեթև ատլետ Վարդան Հովսեփյանը, մարմնամարզիկ Ալբերտ Ազարյանը:



Գեղեցիկ վարժություններ է կատարում ֆիզկուլտ ինստիտուտի ուսանողուհի Լաուրա Գալստյանը:

Լուսանկարները՝ Ա. ՀԵՔԵՔՅԱՆԻ

Մարմնամարզության գծով սպարտակիադայի չեմպիոնի կոչում շնորհվեց սպորտի վարպետ Վաչագան Հակոբյանին և Վալենտինա Մավրոնկովային:

Ռեսպուբլիկական սպարտակիադայում առաջնություն շահած լավագույն կոլեկտիվներն ու սպորտսմենները այս ամսին մասնակցեցին Մոսկվայում կայացած ՍՍՌՄ ժողովուրդների սպորտային մեծ տոնին՝ երկրորդ սպարտակիադային և բարձր պահեցին Հայաստանի սպորտային պատիվը:

Ս. ՄԻՐԶՈՅԱՆ

## ՀՐԱԺԵՇՏ ՃԱՄԲԱՐԻՆ

Ե. ԱՌԱՔԵԼՅԱՆ

Վերջին խառույկը կվառենք շուտով.
Հրաժեշտ կտանք մեր զով ճամբարին
Ու տուն կթռչենք անհուն կարոտով.
Ուր սպասում են մեր ճանապարհին։

Հրաժեշտ կտանք լեռներին այս սեգ.
Ջրերին խորունկ, լանջերին կանաչ.
Լեռնալանջերով ժապավենի պես
Կձգվի մեր դեմ. ճամփան մեր ճանաչ։

Ու մնաս բարով կասենք սրտագին
Թիթեռնիկներին, ծաղկանց բուրավետ.
Որ ինչպես քնքուշ քույրիկներ անգին
Խաղընկեր եղան, խաղացին մեզ հետ։

Հրաժեշտ կտանք անտառին թավուտ.
Որի զով գրկում երգը մեր թնդաց
Ու Ծաղկաձորի երկնքին կապույտ.
Որ ջինջ աստղերով մեր գլխին շողաց։

Նորից հարազատ դպրոցի ճամփան
Վառ գալիքի պես՝ մեր դեմ կժպտա.
Ու առվակների կարկաչի նման
Դպրոցի զանգը անուշ կղնգա։



Նկ. Ա. ԲՈՅԱՋՅԱՆԻ

# ԱՐԲԱՆՅԱԿԸ այգեստանում

ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

## ՍԿԻԶԲԸ

Լավ, հաճելի երեկո էր։ Երեխաներն հավաքվել էին մարագի շուրջը, նստոտել կանաչների վրա և հսկայական տանձենու թեք ընկած բնին։ Օնիկը Վարագին կանչեց այգու խորքը։ Տղաները չգիտեին, թե նրանք ինչ են այդքան երկար փսփսում։ Քիչ հետո նրանք կանչեցին էլի մի քանի հոգու՝ Աշոտին, Գեղամին, Արամին, Շահենին։ Մնացածները տեսնելով, որ գաղտնի խորհրդակցությունը չի վերջանում, սկսեցին Կարա-Կազան խաղալ։ Դա պահմտոցու նման խաղ է, միայն թե խաղում են խմբերով։ Մի խումբը մնում է բնում, իսկ մյուսները թողնելով իրենցից մեկին գնում են պահվելու։ Մինչ երեխաների այդ խումբը Կարա-Կազան էր խաղում, այգու խորքում Օնիկի գլխավորությամբ շարունակվում էր տարօրինակ խորհրդակցությունը։

Թե ինչ խոսեցին նրանք, ինչ որոշեցին՝ հետո կիմանաք, միայն թե հենց մյուս օրն էր, որ Արեգնազան տատը տուն գնաց առանց աղի-բուղի վաճառելու։ •

— Ի՞նչ եղան էս երեխեքը,— զանգատվում էր նա հարևաններին,— էլ աղի-բուղի չեն առնում։ Ախր ինչի՞ միանգամից։ Էստեղ մի բան կա,— եզրակացնում էր նա։

Նստում էր Արեգնազան տատը դռան առաջ ու այլևս չէր նիրհում, աչքը գցած փողոցի աջ ու ձախ կողմերին, նա սպասում էր թաղի երեխաներին, որոնք, ճիշտ է, առաջվա նման դուրս էին գալիս խաղալու, այս ու այն կողմ էին գնում, բայց ոչինչ չէին առնում։ Միայն կարճլիկ Հովիկն էր հավատարիմ մնացել պառավին։ Նա ամեն օր ջութակի տուփը ձեռքին գնում էր դասեր առնելու և վերադարձին գրպանն էր լցնում աղի-բուղին ու տուն գնում։ Ճիշտ է, արձակուրդներ էին, բայց Հովիկը շարունակում էր պարապել։ Մայրն ասում էր, որ նա շատ տաղանդավոր տղա է և որ մեծանա ամբողջ աշխարհը նրան կճանաչի։ Ու հիմա Հովիկը

* Սկիզբը տե՛ս «Պիոներ» № 7.

ամառվա շոգին էլ շարունակում էր պարապել։

Արևգնազյան տատն արդեն շատ էր առատաձեռն դարձել։ Նա մի ռուբլու դիմաց Հովիկին երկու բաժակ աղի-բուղի էր տալիս։

— Արժանի ես, բալա,— ասում էր նա։

Մի օր էլ պառավը Հովիկին հարց ու փորձ արեց.

— Հովիկ ջան, չգիտե՞ս. թե էս թաղի երեխեքն ինչի էլ աղի-բուղի, մառոժնի չեն ուտում։

Հովիկն, իհարկե, ոչինչ չհասկացավ։ Ինչպե՞ս թե չեն ուտում, բայց ուսերը թափ տալով պատասխանեց.

— Չեն ուտո՞ւմ... չգիտեմ։

Դե Հովիկն ի՞նչ իմանար։ Նա մարազի մոտ գրեթե չէր լինում, իսկ եթե գնում էր՝ ձեռքերը մեջքին դրած կանգնում էր հեռու ու մեկ-մեկ, թաքուն-թաքուն բերանը գցելով եգիպտացորենի հատիկները, նայում էր, թե ինչպես են խաղում ուրիշները։ Այդպես էր Հովիկը։ Ընկերություն էր անում միայն իրենց հարևանի աղջկա՝ Վարդուհու հետ։ Նրանք իրենց բակում էին պահմտոցի խաղում։ Մեկը կանգնում էր պատի տակ, աչքերը փակում, իսկ մյուսը պահվում էր։ Եվ երբ պահվողը լավ տեղավորվում էր իր թաքստոցում, ամբողջ ձայնով մեկ կանչում էր.

— Պարա յա (չգիտես ինչու այս բառը նրանք ռուսերեն էին ասում)։

Հովիկը ջութակի դասեր էր առնում, ինչպես մայրն էր ասում, հայտնի ջութակահար պիտի դառնար, բայց լսողությունը հերիք չէր անում նրան, որպեսզի կողմնորոշվի, թե ձայնը որ կողմից է գալիս։ Ման էր գալիս, ման ու վերջապես լացակումած ձայնով կանչում.

— Լա՜վ, դուրս արի, չեմ գտնո՜ւմ...

Իսկ Վարդուհին նրան միշտ էլ գտնում էր։ Այսպիսին էր Հովիկը ու պարզ է, որ պառավի հարցին նա չէր կարող պատասխանել։

## ՄԵՐ ԱՐԲԱՆՅԱԿԸ ԿԹՌՉԻ

Տղաները որոշել էին արբանյակ սարքել, բայց այնպիսի արբանյակ, որ օդ բարձրանար, պտտվեր երկրի շուրջը։ Երբ Օնիկն այդ մասին Վարազին ասաց, Վարազը խելքի մոտ բան չհամարեց դա։

— Բան չի դուրս գա, Օնիկ, իզուր է,— ասաց նա։

Բայց Օնիկը իրենն էր պնդում։

— Կլինի՛, կլինի՛։ Մենք երեք աստիճանի հրթիռ էլ կսարքենք։

— Երեք աստիճանի՞...

— Հա՛, բա՞... ես էնպիսի մի հրթիռի տեղ գիտեմ։

Սկզբում Վարազը չէր հավատում, թե բան դուրս կգա, բայց երբ հաջորդ օրը Օնիկը նրան տարավ կանգնեցրեց ապագա հրթիռի մոտ, նա էլ միանգամից լցվեց վճռականությամբ ու հավատով։

Իսկ հրթիռն առայժմ բոլորովին էլ հրթիռ չէր, այլ փողոցի անկյունում, պատի տակ ընկած մի



մեծ, մետաղե սնամեջ սյուն, նրանցից, որոնց վրա գեղեցիկ լույսեր են վառվում։ Օնիկենց նրբանցքը դուրս էր գալիս մի լայն փողոցի վրա, ստադիոնի ճանապարհին։ Մի ժամանակ այդտեղի լույսերը մետաղե հաստ սյուների վրա էին ամրացված։ Վերջերս հին սյուները հանեցին տարան, իսկ փոխարենը կախովի լույսեր անցկացրին։ Թե ինչպես էր եղել, այդ սյուներից մեկը մնացել էր պատի տակ։

— Տե՛ս, Վարազ, երեք աստիճան ունի, ինչպես իսկական հրթիռը,— ասում էր Օնիկը ոգևորված։



Եվ իրոք, սյունը, որ մոտ հինգ մետր երկարություն ուներ, օղակներով բաժանված էր երեք մասի։

— Իսկ ինչպե՞ս պիտի տեղափոխենք,— անհանգստացավ Վարազը։ Չէ՞ որ սա շատ ծանր է։

— Ծա՞նր. ի՞նչ ծանր, մի բան հոգով կտեղափոխենք։ Ես հնարը կգտնեմ։

Եվ իրոք, Օնիկն հնարը գտավ։ Նա հավաքեց թաղի բոլոր ինքնաշեն հեծանիվները։ Այն հեծանիվները, որոնց վրա տղաները չեն նստում, այլ մի ոտքը դնելով վրան, մյուսով հրում են գետնին ու գրնգալեն առաջ գնում։ Հավաքեց, հանեց առանցքակալավոր փոքրիկ անիվները։

— Մի՛ վախեցեք,— ասում էր նա տերերին,— ես լավ կսարքեմ։— Եվ երեխաները համոզված էին, որ նա կսարքի։ Դե Օնիկի ձեռքից ամեն ինչ գալիս էր։

Մի օր էլ, ուշ երեկոյան, երբ ամբողջ նրբանցքը քնած էր, երկաթե սյունը առանցքակալավոր անվակների վրա գլորվեց մինչև Այգեստանի հին մարագը։

— Մեր արբանյակը կթռչի,— ասաց Օնիկը։

— Կթռչի՛,— ավելացրեց Վարազը, նայելով աստղաշատ երկնքին։

## ՈՒՆԻՎԵՐՄԱԳԻ ԱՌԱՋԻՆ ՀԱՐԿՈՒՄ

Օնիկը, Վարազը, Աշոտը, Գեղամը և Արամը ճանապարհ ընկան դեպի ունիվերմագ։ Օրվա այս ժամին խանութում քիչ մարդ կար։ Նրանք ներս մտան և գնացին ուղիղ ամանեղենի բաժինը.

— Մորաքույր, մի էն կաթի աման ցույց տա՛ք,— դիմեց Օնիկը։

Մյուսները լուռ հետևում էին։

Վաճառող կինը այլումինե կաթնամանը բերեց։ Տղաներն աման վերցնելով՝ շուռ ու մուռ տվեցին ձեռքերում, նայեցին ներս, շոշափեցին հաստությունը։ Հետո Օնիկը գրպանից հանեց ծալովի մետրաչափը և չափեց կաթնամանի բարձրությունն ու լայնքը։

Վաճառող կինը զարմացավ։

— Էլ ի՞նչ եք չափչփում, երե՛ք լիտրանոց է,— ասաց նա։

Օնիկն աման վերադարձրեց.

— Էն ճաշի աման տվեք։

— Հիմի դուք կաթի աման եք ուզու՞մ, թե ճաշի, չհասկացանք,— սրտնեղաց վաճառող կինը ու նրանց մեկնեց մեծ կաթսան։

Հիմա էլ տղաները սկսեցին կաթսան տնտղել, չափել, չափչփել։ Հետո Օնիկը ներողություն խնդրելով, պահանջեց մի ուրիշ կաթնաման, ավելի մեծ։

— Յա՛,— զարմացավ վաճառողը,— դուք հո մեզ ձեռ չե՞ք առել։

— Չէ՛, մորաքույր, խնդրում ենք ցույց տա՛ք, մենք փող ունենք։— Ու Օնիկը ցույց տվեց փողերը։ Կինը թերահավատորեն նայելով նրանց, բերեց հինգ լիտրանոց կաթնամանը։ Այդ մեկը հարմար էր, բոլորը գլխով համաձայնություն տվեցին։ Տղաները փողը մուծեցին ու հեռացան։

— Ինչ մազալու գնորդներ էին,— վաճառող կինը դարձավ իր հարևանին։— Իրենք էլ չգիտեին, թե ինչ են ուզում։

Իսկ տղաները բարձրացան երկրորդ հարկ։ Այստեղ նրանք ութ հատ ձեռքի լապտերի մարտկոց գնեցին ու դուրս եկան խանութից։ Դռների մոտ միայն Օնիկը հիշեց, որ մոռացել են հղկաթուղթ առնել։ Եվ փոխանակ մեկն ու մեկը գնար հղկաթուղթ առնելու, նրանք նորից ամբողջ խմբով ներս մտան։ Այստեղ էլ Օնիկը տնտղեց բոլոր տեսակի հղկաթղթերը, մինչև որ համապատասխան թուղթ գտավ։ Հետո նրանք խանութից ուղիղ մեկնեցին դեպի Այգեստանի մարագը։

Աշխատանքն սկսվեց։

Տղաներն այնպիսի ոգևորությամբ էին կպել գործի, որ մոռանում էին անգամ ճաշել։ Ծնողներից մի երկուսը նույնիսկ եկան նրանց հետևից և քիչ էր մնում ամեն ինչ իմանային։ Օնիկն ստիպված աշխատանքի և ընդմիջման ժամեր նշանակեց։ Ամենից շատ աշխատում էր Օնիկը։ Նա բերել էր իր փականագործ հոր գործիքները, մյուս տղաներն էլ էին գործիքներ բերել։ Օնիկը կաթնա-

մանր չափեց-չափչփեց և թիթեղի մկրատով կըտրատեց, բաժանեց շերտերի։ Հետո այդ շերտերը նախօրոք պատրաստած կմախքի վրա կպցրեցին և ստացվեց ալյումինե մի գունդ։ Բայց դա դեռ գործի սկիզբն էր, դեռ շատ բան ունեին անելու։ Աշխատում էին միայն հինգ հոգի, մնացածները միայն օգնում էին մեծահասակներին։

Մի օր էլ, երբ նրանք աշխատանքով հափշտակված նստած էին մարագում, հանկարծ դուռը բացվեց ու շեմքի վրա երևաց Ավետիք պապը։

— Էյ-հե՜յ, էստեղ կարգին արհեստանոց եք բացել,— ասաց նա ժպտալով,— էդ ի՞նչ գործի եք, տըղերք։— Ու առաջ գալով սկսեց մեկ-մեկ տնտղել գործիքները, պատրաստվող գնդակները, շոյել երեխաների գլուխները։

— Տես է՜, ոնց են մեծացել, ոնց են լավացել բալիկներս,— ասում էր նա ինքն իրեն, նստելով կոճղի ծայրին,— էդ ի՞նչ եք շինում։

Այստեղ բոլորը նայեցին Օնիկին։ Սա արբանյակի շերտավոր գունդը ձեռքին բռնած, մոտեցավ Ավետիք պապին, նստեց նրա մոտ, կոճղի վրա ու սկսեց պատմել։

Օնիկը քչախոս էր, չէր սիրում ավելորդ խոսքեր ասել, բայց հիմա կակազելով ու կարմրելով, նա աշխատում էր իր խոսքին գեղարվեստական տեսք տալ, որքան կարելի է լավ պատմել, որ Ավետիք պապը հասկանա։

— Գիտե՞ս պապի, այ ինչքան ժամանակ է թռչում է արբանյակը։ Լավ է չէ՞... Դու տեսե՞լ ես ոնց է թռչում... հասկանո՞ւմ ես, մենք ուզում ենք, որ էլի թռչի... օրբիթա՞ անցնի մեր երկնակամարով մի ուրիշ արբանյակ... այսինքն, պապի, մեր սարքածը։

— Ի՞նչ,— զարմացած հարցրեց Ավետիք պապը, որ մինչ այդ ձեռնափայտին հենված լուռ լսում էր ժպտալով,— ինչպե՞ս թե թռչի, ոնց կթռչի։

Օնիկն իր ձեռքի գործը տվեց Վարազին ու պապի ձեռքը բռնած դուրս տարավ նրան։

— Գնա՞նք պապ, ցույց կտամ քեզ, գնանք։

Ու նրանք կանգնեցին մարագի պատի տակ ընկած չուգունե սյան մոտ։ Երկար խոսեց Օնիկը, ստիպված եղավ գործածել այնպիսի բառեր, որ մինչ այդ գիտեր, բայց երբեք չէր օգտագործում. «օրբիթա», «եռաստիճան», «կոսմիկական» և այլն։

Ավետիք պապը լուռ լսում էր։ Միայն նրա մանրիկ աչքերն էին խորամանկ ժպտում։ Լսեց, լսեց, ժպտաց բեղի տակ ու ասաց.

— Լավ գործ եք բռնել, բալե՛ք։

## ԴԺԳՈՀՈՒԹՅՈՒՆ

Բակային ճամբարը չէր կարելի ասել, թե չի գործում։ Ամեն տարվա նման պիոներներն ու հոկտեմբերիկները դարձյալ հավաքվում էին, խաղեր կազմակերպում, ձեռքի աշխատանքով զբաղվում, իսկ երեկոյան երեխաները կրկնապատկվում էին։ Գալիս էին նաև մեծերը և հիանում պիոներների խաղով ու պարով, ճարպկությամբ ու հնարամտությամբ։ Բոլորը գոհ էին, միայն Անահիտն էր դժգոհ, հավաքական ջոկատի ջոկատավարը։ Շուտով բացվելու էր պատանի տեխնիկների բաղա-



Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ



ՆԵԿՏԱՐ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

Փոքրիկ Հակոբիկը շատ էր ուզում նմանվել մեծերին, հատկապես իր հորը: Այդ պատճառով առավոտից մինչև երեկոն պտտվում էր մոր շուրջը և ամեն կերպ աշխատում էր օգտակար լինել տնային գործերում: Ամենից շատ սիրում էր զբաղվել հավերով: Երբ մայրը նրան ասում էր. «Հակոբիկ, կուտ տուր հավերին», նա վազում էր դեպի հավանոցը և բաց անում դուռը: Հավերը կչկչալով դուրս էին թռչում բնից ու միապաղաղ կտկտոցով հավաքում գետնին շաղ տված հատիկները: Հակոբիկը նայում էր նրանցից քիչ հեռու և սպասում, մինչև բոլորը կշտանում էին: Երբ հավերը կշտացած հեռանում էին, նա վերցնում էր մի ամանն ու հավաքում բնում եղած ձվերը:

Մի անգամ էլ, երբ ձվերը հավաքած կուզեկուզ դուրս էր գալիս հավանոցից, ոտքը դիպավ դռան շեմին ու վայր ընկավ՝ ձեռքից գցելով ձվերով լի ամանը: Բոլոր ձվերը ջարդվեցին: Վախից նա ոչ մի ձայն չհանեց, նույնիսկ լաց չեղավ, չնայած ծունկը կպել էր քարին ու շատ էր ցավում: Դժվարությամբ վեր կացավ տեղից, սուս ու փուս տուն մտավ, կծկվեց թախտի մի անկյունում ու քնեց:

Երբ արթնացավ քնից, կեսօրից անց էր: Արևի ճառագայթները ողողել էին սենյակը: Սեղանի շուրջը նստած էին հայրը և անծանոթ մի հյուր: Նրանք խոսում էին հավերի ու ճտերի մասին: Հակոբիկը աչքերը տրորելով լարեց ուշադրությունը, նրան թվաց, որ խոսում են իր այդ օրվա կատարած հանցանքի մասին, նորից քնած ձևացավ:

— Ճտերի պահելու տեղը պետք է լինի շատ տաք և լուսավոր,— ասում էր անծանոթը:

— Իսկ ե՞րբ պետք է դուրս թողնել նրանց,— հարցրեց հայրը:

— Հենց առաջին օրերից, երբ եղանակը տաք է,— ու նա սկսեց մանրամասն բացատրել, թե ինչպես պետք է խնամել ու կերակրել ճտերին:

Հակոբիկը զգաց, որ խոսակցությունը իր մասին չէր, էլ չհամբերեց և կամաց շարժվեց տեղում: Հայրը շրջվեց նրա կողմը և ուրախ ասաց.

— Վեր կաց, վեր, ի՞նչ ես օրը ցերեկով ծույլ տղայի նման քնել, վեր կաց, գնանք մեզ հետ, տե՛ս, թե այս քեռին ինչքան շատ ճտեր է բերել մեր կոլտնտեսության համար:

Հակոբիկը արագ իջավ թախտից, ձեռքերը դրեց գրպանները ու մեծավարի մոտեցավ հորը:

Երբ թռչնանոցի դռնից ներս մտան, Հակոբիկի աչքերը հրճվանքից փայլեցին: Գետնին փռած չոր ծղոտի վրա վազվզում էին բազմաթիվ ճտեր, բոլորն էլ սպիտակ ու փափլիկ: Հակոբիկի համար դա մի չտեսնված զվարճալի տեսարան էր: Նա մեկ նայում էր հորը, մեկ՝ վազվզող ու ճչճվացող ճտիկներին:

— Հայրիկ, կարելի՞ է գնամ ճտիկների մոտ:

— Իհարկե, կարելի է, գնա կեր տուր, ջուր տուր, այ, այն մորաքույրը քեզ ցույց կտա, թե ինչպես կերակրել նրանց: Դե գնա, ես էլ

գնում նրանց համար կեր բերում:

Հակոբիկը կամաց մոտեցավ վանդակներին ու կանգնեց նրանց մոտ: Նրա ուշադրությունը գրավեց մի չալպտուրիկ ճուտիկ, որը կտուցով բռնել էր ձվի մի մեծ կտոր ու վազում էր մեկ այս, մեկ այն կողմը ու ոչ մի կերպ չէր կարողանում ազատվել իրեն հետապնդող ճտերից, որոնք ցանկանում էին խլել նրանից այդ պատառը:

Հաճույքից Հակոբիկի դեմքը կարմրել էր, աչքերը փայլում էին: Երբ Չալպտուրիկը վազելով մոտեցավ իրեն, էլ չհամբերեց, արագ կռացավ, բռնեց նրան ու մոտեցրեց շրթունքներին:

— Վայ, ջանիկս, ինչ լա՜վն ես, ի՜նչ փափլիկ:— ճուտիկն սկսեց ծվծվալ. Հակոբիկը ցած դրեց նրան ու հեռվից բացականչեց.

— Փախի՛ր, չալո ջան, փախի՛ր:

Ճտապանները կեր էին լցնում կերամանները, իսկ Հակոբիկը կանգնած ուշադիր դիտում էր ճուտիկներին, որոնք իրար հրմշտելով միմյանցից խլում էին կերն ու ագահաբար կուլ տալիս: Չալպտուրիկը ամենաուժեղն էր, նա թռչում էր կերամանների վրա, կամ մյուս ճուտիկների վրայով խցկըվում էր նրանց արանքները, և երբ մի տեղում վերջանում էր կերը, վազում էր մյուս տեղը: Երբ կշտացավ, մոտեցավ Հակոբիկին, կտուցը մի քանի անգամ քսեց ծղնոտին ու նստեց: Հակոբիկը նորից բռնեց նրան:

— Վա՜յ, չալո ջան, ինչ լավ կերար, ինչ լա՜վն ես, է՛:

— Հակոբի՛կ, արի մենք ջուր լցնենք ջրամանները,— ձայն տվեց ճտապանը:

Հակոբիկը զգուշությամբ ցած դրեց ճուտիկին ու վազեց:

Երեկոյան մայրը խիստ զայրացավ Հակոբիկի վրա՝ ջարդած ձվերի և ամբողջ օրը տնից բացակայելու համար:

— Մի՛ բարկանա, նա ամբողջ օրը ինձ հետ է եղել,— միջամտեց հայրը,— ճտերին է կերակրել, խնամել:

Երբ հայր ու որդի նստեցին ճաշելու, Հակոբիկն ուտում էր ու անվերջ հարցեր էր տալիս նրան.

— Հայրիկ, դու էն չալիկին տեսա՞ր, ինչքան ագահ էր, բոլորից շատ էր ուտում: Գիտե՞ս, ես նրա անունը դրեցի Չալպտուրիկ:

— Տեսա, շատ լավիկն էր:

— Հայրիկ, գիտե՞ս, ամեն օր պետք է գնամ ճուտիկների մոտ:

— Գնա, ամեն օր էլ գնա, դրա համար հարկավոր է, որ շատ քնես, որպեսզի առավոտյան շուտ արթնանաս:

Հակոբիկը պառկեց քնելու, բայց երկար



Նկ. Վ. ԳԱԲՐԻԵԼՅԱՆԻ

ժամանակ նրա քունը չէր տանում, աչքերի առաջ վազվզում էին փոքրիկ ու սպիտակ ճտերը, ականջներում դեռ հնչում էր ճուտիկների ծվծվոցը. Նրան թվում էր, որ հիմա էլ նրանք ծվծվում են ու վազվզում: Իսկ Զալպտուրիկը բոլորովին չէր հեռանում նրա աչքից ու նրա մասին մտածելով խոր քուն մըտավ:

Մյուս օրը առավոտյան Հակոբիկը արթնացավ շատ վաղ, շտապ հագնվեց, լվացվեց ու հոր հետ նստեց նախաճաշելու.



Երբ հասան բուծարան, առաջին հոգսը եղավ գտնել Զալպտուրիկին:

— Ձու՜... ձու՜...ձու՜...— կանչեց նա: Բոլոր ճտերը վազեցին Հակոբիկի մոտ, իսկ Զալպըտուրիկը կանգնել էր անշարժ, ոչ աչքերը բացեց, ոչ էլ գլուխը բարձրացրեց:

— Ի՞նչ է պատահել քեզ, Զալո ջան, ինչու՞ չես վազվզում:—Կամաց մոտեցավ, զգուշությամբ բռնեց նրան և դիմելով ճտապահին ասաց.

— Մորաքույր, այս ճուտիկը հիվանդ է. ոչինչ չի ուտում:

— Ինչպե՞ս, այդ ի՞նչ է պատահել դրան, երեկ շատ լավ էր զգում, երևի պատահաբար այնքան է կերել, որ հիմա էլ չի կարողանում մարսել:

— Մրսել է, մորաքույր, մրսել է, ես նրան իմ ծոցը կդնեմ, որ տաքանա, լա՞վ:

— Լավ, տեսնենք կարո՞ղ ես դրան լավացնել:

Հակոբիկը Զալպտուրիկին դրեց ծոցն ու սկսեց ճտերին կեր ու ջուր տալ: Աշխատում էր շատ զգույշ, որպեսզի Զալպտուրիկին վնաս չպատճառի: Քիչ հետո նա ծոցից հանեց Զալպտուրիկին, ձեռքի մեջ կեր լցրեց և մոտեցրեց նրան:

— Կե՛ր, Զալո ջան, կեր, որ շուտ լավանաս:

Զալպտուրիկը մի քանի անգամ կտցեց կերին ու նորից աչքերը փակեց:

Տուն գնալու ժամանակ Հակոբիկն անվստահ մոտենալով ճտապահին, ասաց.

— Մորաքույր, եթե Զալպտուրիկը մնա այստեղ, էլի կմրսի:

— Ի՞նչ անենք, որ չմրսի, Հակոբիկ:

— Կթողնե՞ք նրան տանեմ մեր տուն. ես նրա համար տաք տեղ կպատրաստեմ, լավ բաներ կուտեցնեմ,—այնպես էր խնդրում Հակոբիկը, որ ճտապահը չուզեց մերժել նրա խնդրանքը:

— Դե լավ, որ ուզում ես, տար, բայց տես, լավ կպահես, հա՛, եթե սատկեց, քեզ այստեղ չենք թողնի:

Տուն հասավ թե չէ, Հակոբիկը ծոցից հանեց Զալպտուրիկին, դրեց սեղանի վրա, առաջը լցրեց հաճի ու հացի մնացորդներ: Բայց Զալպտուրիկը քիթը կախել էր և ուտել չէր ուզում: Հակոբիկը մի փոքր արկղ բերեց, տակը շոր փռեց, Զալպտուրիկին դրեց մեջը:

Առավոտյան Զալպտուրիկն իրեն շատ լավ էր զգում. երբ Հակոբիկը կեր լցրեց նրա առաջ, նա սկսեց ուտել: Լավ կերակրելուց հետո, նորից դրեց ծոցն ու շտապեց ֆերմա:

Վեց ամիս էր անցել ճտեր ստանալու օրից: Ճտերը մեծացել էին, փետրավորվել, սպիտակ աղավնիների տեսք էին ընդունել: Զալպտուրիկը մի հսկա աքլոր էր դարձել. Քայլում էր հպարտ, գլուխը բարձր պահած և բոլորովին չէր հեռանում Հակոբիկից: Մի օր Հակոբիկը խաղում էր Զալպտուրիկի հետ, երբ ֆերմա եկավ այն քեռին, որը ճտեր էր բերել իրենց կոլտնտեսությունը:

— Էս մեծ մարդը ի՞նչ է անում այստեղ, — ասաց նա ու ցանկացավ կսմթել Հակոբիկի տռուզ թուշը:

Հենց այդ ժամանակ Զալպտուրիկը վրա հասավ ու կծեց քեռու ձեռքը: Քեռին ուզեց խփել նրան, հեռացնել իրենից, իսկ Զալպըտուրիկը մեկ փախչում էր, մեկ էլ մարտական դիրք ընդունած, թևերը թափահարելով հարձակվում նրա վրա:

Հակոբիկը զայրանում էր Զալպտուրիկի անկարգ արարքի համար, բայց ոչ մի կերպ չէր կարողանում նրան հեռացնել: Ամոթից մինչև ականջները կարմրել էր ու սակվել տեղում.

— Մի տեսեք է՛, կրակ է կտրել. անպիտա՛ն, ես քեզ ի՞նչ եմ արել, էդ ինչի՞ ես նստիկին չես կծում,— ասում էր ու աշխատում հեռացնել Զալպտուրիկին:

— Բա Զալպտուրիկը կկծի՞ Հակոբիկին, դա նրա պահած նուշն է, կուտեր, եթե Հակոբիկը լավ չխնամեր, տղան ուղղակի փրկեց նրա կյանքը,— ասաց նստապահներից մեկը:

— Հակոբիկը բոլոր նշերին էլ լավ է խըրճամում, իսկ Զալպտուրիկին նա մի քիչ երես է տվել,— ծիծաղելով ասաց մյուս նստապահը:— Ապա մի փորձիր Հակոբիկին ձեռք տալ, շան նման կհարձակվի վրադ:

— Ապրեք դու և քո քաջ ախորը,— ասաց քեռին,— այդպես էլ գիտեի, որ դու լավ նշեր կպահես:

Հակոբիկն ուրախությունից բռնեց Զալպըտուրիկին և ուզեց գրկել, բայց կարմրակատարը թռավ քարի վրա և բարձր ձայնով կանչեց.

— Ծուղրուղու՜...

# Մեր ՓՈՇԵԿՈՒԼ ՄԵՔԵՆԱՆ

Ս. ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ

Երբ տուն բերին մեքենան,
Վրա հասավ մեր Սոնան.
—Ի՛մն է, ի՛մն է,— գոռգոռաց,—
Կաշխատեցնեմ ես ձեռաց.
Տատի՛, ոտքդ մի կողմ տար,
Դե շուտ բացեք ճանապարհ,
Պիտի օգնեմ մայրիկին,
Մաքրեմ հատակը կարգին...
Աղմկում էր մեր Սոնան
Ու քարշ տալիս մեքենան:
Մեկ էլ տատը.— Ա՛յ բալեք,
Ու՞ր է մատնոցս, գտե՛ք:
Գործի գցած ձեռները,
Խառնվել են թոռները.
Ստուգում են մեկ առ մեկ
Ամեն անկյուն, ամեն ճեղք.
Բայց ո՞չ մատնոց, էլ ո՞չ նար,
Թե դրել ես, արի տար...
Դու մի՜ ասի այս ցմփոր
Փոշեկուլն է մեղավոր:
—Վա՜յ, ամոթ քեզ, փոշեկուլ,
Մարդ էլ լինի այսքան կու՞յր.
Փոշին ու աղբը թողել՝
Դու մատնոցն ես կուլ տվել...

Բայց մեքենան համարձակ
Զուգեց մնալ խոսքի տակ.
Ծըը՛խկ, բացեց նա թափով
Կափարիչը շտապով:
Ապա ասաց.
—Սիրելի՛ս,
Ամեն մի գործ բռնելիս,
Պիտի լինել խելացի.
Հարայ-հրոցը պետք չի:
Իսկ ես ինչի՞ ամաչեմ,
Մեքենա եմ, հո մարդ չեմ:
Ուր որ տանեք՝ ես կգամ,
Ինչ մոտ լինի՝ կուլ կտամ:
Ստացե՛ք ձեր մատնոցը,
Բայց իմացեք ձեր գործը...


Նկ. Մ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ




Մ. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ

Հայրիկը մի անգամ թութակ բերեց ու ասաց.

—Գիտե՞ս, Բարկեն, սա խոսող թռչուն է։

Բարկենը զարմացավ։

- Ո՞նց թե խոսող... չէ, թող խոսի։

—Խոսի՞։ Այս րոպեին,—պատասխանեց հայրիկն ու դառնալով թութակին, հարցրեց.—այստեղ լա՞վ է, լա՞վ է, լա՞վ է։

—Լավ է։ Լավ է։ Լավ է,—ծվծվալով վրա տվեց թռչունը։

—Վա՜յ, ճիշտ որ խոսող է։ Դե թող հիմա էլ իմ անունը տա։ Կարո՞ղ է տալ՝ Բարկեն, Բարկեն, Բարկեն...

Թութակը նույն ծվծվան ձայնով կրկնեց.

—Բարկե՛ն, Բարկե՛ն, Բարկե՛ն...

Այնուհետև Բարկենն ու թռչունն ընկերացան։ Բարկենը նրա անունը Բարսիկ դրեց։ Եվ Բարսիկը երկար ժամանակ Բարկենի զրուցակիցն էր։ Նա թութակին սովորեցրեց առավոտյան ասել «բարի լույս», երեկոյան՝ «բարի գիշեր»։

Սակայն մի անգամ Բարկենը Բարսիկից խիստ վիրավորվեց։

Մի օր Բարկենը, առանց մայրիկի գիտության, դուրս էր եկել բակ խաղալու, այնտեղից էլ՝ ուղիղ փողոց։ Երբ մայրիկն իմացավ, նրան հանդիմանեց։ Եվ փոխանակ Բարկենը մայրիկից ներողություն խնդրեր, սկսեց հակառակել.

—Բա ինչպե՞ս է Լևիկը ամեն օր փողոցում խաղում... բա ինչո՞ւ Հակոբիկը...

—Ձա՛յնդ, — ասաց մայրիկը,—առանց թույլտվության, տանից ոչ մի քայլ։

Բարկենն սկսեց լաց լինել։

—Ձա՛յնդ, ձայնդ չլսեմ։

Հազիվ էր Բարկենը լռել, երբ մեկ էլ Բարսիկն իր ծվծվան ձայնով վանդակից բացականչեց.

—Ձա՛յնդ, ձա՛յնդ չլսեմ, ձայնդ, ձայնդ չլսեմ։



Նկ. Յ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

## ԴԱՐՉՆԱԳՈՒՅՆ ՄԱՐԴԻԿ ԿԱՆԱՉ ԲԱՑԱՏՈՒՄ

(Գիտա-ֆանտաստիկական պատմվածք)

ԿԱՐԵՆ Ա. ՍԻՄՈՆՅԱՆ

Նկ. Գր. ԽԱՆՋՅԱՆԻ

Ա.

— Սու՛ս... Կամաց...

Ես զարմացած նայեցի Կոստային։ Իսկ նա մոտեցավ և պատուհանի գոգին նստած կատվի վզից բռնելով, դրեց հատակին ու փակեց փեղկերը։ Սենյակը թաղվեց մթության մեջ։

— Կոստա... Լույսը վառե՞մ,— հարցրեցի ես։

— Լույսը վառե՞մ...— նորից հարցրեցի ես և նորից պատասխան չստանալով, մոտեցա հայրիկի գրասեղանին ու սեղմեցի փոքրիկ լուսամփոփի կոճակը։

— Ինչո՞ւ վառեցիր,— բարկացած ձայն տվեց Կոստան, հետո հաշտվողական տոնով ավելացրեց,— լա՛վ, թող վառված մնա։



—Ի՜-ի՜...դու էիր պակաս, դե սուս արա, է։

Ճաշի ժամանակ Բաբկենը շարունակ մայրիկին էր նայում, մտածելով, թե հանկարծ հայրիկին կասի իր այսօրվա արածի մասին։ Ճիշտն ասած, մայրիկը չէր մոռացել Բաբկենի արածը, բայց հայրիկին չվրդովեցնելու համար այդ անգամ որոշել էր չասել։

Ու այդպես, հայրիկը բանից անտեղյակ ճաշում էր, երբ մեկ էլ հանկարծ Բաբսիկն իր վանդակից ծվծվաց.

—Ձա՛յնը, ձա՛յնը ցլըսեմ, ձա՛յնը, ձայնը ցլըսեմ։

Հայրիկը մի պահ ուշադրություն սրեց, Բաբկենը մի անգամից շիկնեց, այլայլվեց ու զայրացած հայացք նետելով թութակի վրա, անսպասելի ճչաց.

—Ես... ես էդ Բաբսիկին, չեմ սիրում։ Թող նա մեր տանը չմնա, թո՛ղ ուրիշ տեղ գնա... թո՛ղ գնա... լավ Բաբսիկ չէ։

—Լավ Բաբսիկ չէ՞, ինչո՞ւ,— զարմացավ հայրիկը։

—Էնպես, լավը չէ, փիսն է,— արտասվախառն շարունակեց Բաբկենը,— թող գնա մեր տանից, ես նրան չեմ սիրում։

—Է՛հ, որ այդպես է, կարող եմ ուրիշին տալ,— եղելությունը կռահելով ասաց հայրիկը։— Ո՞վ չի ուզի խոսող թռչուն ունենալ։

Հենց նույն օրը, երեկոյան հայրիկը Բաբսիկին տարավ։ Տունը կարծես միանգամից դատարկվեց։ Բաբկենը շատ տխրեց։

Հայրիկի վերադառնալուն պես՝ Բաբկենը հարցրեց.

—Հայրիկ, ո՞ւր տարար Բաբսիկին։

—Ինչ կարևոր է, տղա՛ս, տարա։ Դո՛ւ էիր ուզում, ես էլ՝ տարա։

—Ուզում եմ, հայրիկ, գնա բեր,— լացակումած խնդրեց Բաբկենը։— Գնա բեր։ Սրանից հետո ես խելոք կմնամ. մայրիկին կլսեմ։ Ա՛յ, կտեսնես, ես այնքան խելոք կմնամ, որ մայրիկը կասի՝ ապրես Բաբկեն, Բաբսիկը կկրկնի՝ ապրես Բաբկեն։

—Իսկ դու կարո՞ղ ես խոսքիդ տերը լինել,— միջամտեց մայրիկը։

—Այո։

—Դե լավ, կտեսնենք,— պատասխանեց հայրիկն ու խոստացավ հաջորդ օրը Բաբկենի խնդիրքը կատարել։

---

Մութ անկյունից նա մոտեցավ գրասեղանին և ինձ մեկնեց ճմրթված մի թուղթ։

Ես հարթեցի թուղթն ու վարդագույն լույսի տակ նայեցի ոսկեգույն տառերին։

— Հրավիրատո՞մս։

— Այո,— հաղթական ժպիտով ասաց Կոստան։

Ես նկատեցի, որ տոմսի մի մասը չկա։

— Հրավիրատոմսը պատռված է,— ծիծաղեցի ես։

Կոստան բարկանալով, ձեռքիցս խլեց թղթի կտորը.

— Ոչինչ չես հասկանում։ Հարկավոր է կարդալ, ոչ թե շատախոսել։

Հրավիրատոմսի վրա գրված էր.

ՀՐԱՎԻՐԱՏՈՄ

ՀԱՐԳԵԼԻ ԸՆԿ Լ. Կ.
Սույն թվի հուլիսի 28-
սային անտառի կա
ցատում դուք
ԴԱՐՁՆԱԳՈՒՅՆ ՄԱՐ
ԿԱՆԱՉ ԲԱՑԱՏՈՒՄ
Սկիզբը ժամը

Ես ոչինչ չհասկացա և թուղթը մեկնեցի ընկերոջս։

— Կգա՞ս կանաչ բացատ,— հարցրեց Կոստան։

— Ինչու՞...







— Այնտեղ ինչ-որ դարչնագույն մարդիկ են գալու:

— Իսկ հրավիրատոմսը որտեղի՞ց:

— Գաղտնիք է, չեմ կարող ասել:

Ես այլևս չխնդրեցի, միայն ոտքով հրեցի կատվին, որը մլավելով թռավ լուսամուտի գոգը:

— Կարեն, գիտե՞ս որտեղից եմ ճարել այդ հրավիրատոմսը,—այլևս չկարողացավ համբերել Կոստան:

— Ոչ:

— Գաղտնիք է... Ոչ ոքի չասես:

— Չեմ ասի...

— Այսօր առավոտյան, երբ տնից դուրս եկա, հանկարծ նկատեցի, որ դիմացի հարևանի...

— Ինժեների՞...

— Հը՛... Նրա բնակարանի դռան արանքում մի թուղթ էր ցցված: Մոտեցա ու քաշեցի: Կեսը պատռվեց: Տեսնեմ՝ հրավիրատոմս է: Անմիջապես գլխի ընկա, որ Հյուսիսային անտառի Կանաչ բացատում ինչ-որ հետաքրքիր բան է լինելու:

Ես Կոստային փորձեցի համոզել, որ եթե ինժեներին հատուկ տոմս են ուղարկել, նշանակում է նրա ներկայությունը պարտադիր է: Իսկ նա երևի ոչինչ էլ չգիտի:

— Ոչինչ,— ասաց Կոստան:—Եթե մենք նրան հայտնենք, ապա պետք է ասենք նաև, որ հրավիրատոմսը ես եմ պատռել: Համաձայնե՞մ ես... Ամաչում եմ:

— Վախենում ես,—ուղղեցի ես:— Մի ուրիշ բան է հարկավոր մտածել: Պատուհանի փեղկերը բաց արա: Մութ է:

— Մթան մեջ մտածելը ավելի հաճելի է:

Մենք նստեցինք բազմոցի վրա: Ես մի ծայրին, իսկ Կոստան՝ մյուս: Սկսեցինք մտածել: Իսկ կատուն արդեն մռռացնում էր:

— Գտա,—գոչեցի ես:— Ինժեներին կհայտնենք հեռախոսով: Լա՞վ...

— Լավ,—համաձայնվեց Կոստան:— Բայց ձայնից կճանաչի:

— Իսկ մենք խոսափողին թաշկինակ կդնենք: Գիտե՞ս նրա հեռախոսի համարը:

— Գիտեմ,—պատասխանեց Կոստան:

— Դե, զանգիր:

Նա թաշկինակը դրեց խոսափողին և հավաքեց ինժեների հեռախոսի համարը:

Բ.

Հուլիսի 28-ին, վաղ առավոտյան ես ու Կոստան արդեն Հյուսիսային անտառի Կանաչ բացատումն էինք: Մենք, ինչպես հարկն է, ուսումնասիրեցինք տեղանքը, բայց ոչ մի հետաքրքիր բան չնկատեցինք: Սովորական խոտաբույսեր, հաստաբուն ծառեր և հատապտուղների թփեր, որոնք հենց նոր էին լվացվել վաղորդյան ցողով: Կոստան համառությամբ ուզում էր մի ինչ-որ հանելուկային երևույթ գտնել, բայց ոչինչ չէր ստացվում, որովհետև բացատը գտնվում էր ոչ թե հանելուկների գրքում, այլ Հյուսիսային անտառում: Հանկարծ զգացի, որ կոշիկներս թրջվել են:

— Կոստա, բավական է... —խնդրեցի ես:

Նա սա  ից հայացքով նայեց ինձ և շարունակեց Կանաչ բացատում հանելուկ որոնել:

Ես մագլցեցի հաստաբուն կաղնու վրա և նստելով ճյուղին սկսեցի սուլել և ճոճել ոտքերս:

Իսկ Կոստան պատռված հրավիրատոմսը ձեռքին, շարունակում էր իր հետախուզական աշխատանքը:

Արևը դուրս եկավ երկայնահասակ ծառերի ետևից և կախվեց կապույտ երկնակամարի վրա: Երևի արդեն կեսօր էր:

Հետո Կոստան էլ մագլցեց ծառի վրա ու նստեց իմ մոտ:

— Հոգնեցի՞ր....

— Այո,— պատասխանեց նա ծանր շնչելով:

Ես գրպանիցս հանեցի լրագրի մեջ փաթաթած հացն ու ձիթապտուղը: Մենք սկսեցինք ախորժակով ուտել ու ճոճել մեր ոտքերը:

Բայց հանկարծ Կոստայի ձեռքից հացի պատառը ընկավ գետին: Քիչ մնաց ինքն էլ ցած գլորվեր, բայց կարողացավ պահել իրեն:

— Մենք այս որտե՞ղ ենք,—բղավեց նա:

— Կանաչ բացատում,—մեքենայաբար պատասխանեցի ես, հետո նայեցի շուրջս:

Ես հիմա չեմ կարողանում բառերով արտահայտել այն սարսափը, որը տիրեց ինձ: Այո, ես պարզապես սարսափեցի: Չնայած խորհրդավոր բաներից միշտ վախենում եմ, բայց որքան էլ սարսափելի հեքիաթ կամ պատմություն կարդամ, միևնույն է՝ չեմ հավատա: Չէ՞ որ հեքիաթները միշտ էլ սուտ են լինում:

Մի խոսքով, երբ նայեցի շուրջս, տեսա, որ մենք գտնվում ենք ոչ թե բոլորին ծանոթ Կանաչ բացատում, այլ մի ընդարձակ հարթավայրի ծայրին:

— Կոստա, մենք գուցե երազ ենք տեսնում,— շշնջացի ես:

— Դու ի՞նչ ես տեսնում,—կասկածանքով հարցրեց Կոստան:

— Հարթավայր... Սպասիր... Այ, հեռվում էլ ինչ-որ մարդիկ են հավաքվել: Նրանք դեպի վեր են նայում... Տեսնես ի՞նչ է պատահել...

— Ես էլ եմ նույնը տեսնում,—ասաց Կոստան:— Բայց, Կարեն, պատահո՞ւմ է, որ տարբեր մարդիկ նույն րոպեին տեսնեն միևնույն երազը:

—Երևի պատահում է... Չգիտեմ,—պատասխանեցի ես՝ վերև նայելով:

Երկինքը այլևս առաջվա նման կապույտ ու թափանցիկ չէր:

Արևը չէր երևում: Մութ ամպերը ստիպեցին գուշակել, որ հորդառատ անձրև է գալու: Լսվեց քամու ձայնը:

— Կարեն, որտե՞ղ կթաքնվենք, երբ անձրև գա,— հարցրեց Կոստան:

Ես չպատասխանեցի: Քամին գնալով ուժեղանում էր: Բայց մի բան էր միայն ինձ շփոթեցնում: Օդի հոսանքը կարծես չէր ուզում ինձ կպչել: Մազերս բոլորովին էլ չէին խառնվել... Տարօրինակ բան...

Մի քանի վայրկյան անց՝ սկսվեց անձրևը, որը գնալով վարարում էր: Սակայն հարթավայրում կանգնած մարդիկ չէին անհանգստանում թրջվելուց: Նրանք կծկվեցին թիկնոցների տակ և շարունակում էին նայել երկնքին:

Կոստան ինձ ստիպեց, որ թաքստոց ճարենք: Մենք ցած թռանք ծառից և վազեցինք դեպի աջ... Այնտեղ կտրված մի ծառ կար, որի փչակը բավականին մեծ էր, և մենք գուցե կարողանայինք պատսպարվել: Անձրևի չրիկ կաթիլները ընկնում էին մեր վրա, և մենք ակամայից սառչում էինք, որովհետև վերնաշապիկից բացի, ոչինչ չունեինք հագած:

Բայց երբ մտանք փչակ, ես զարմացած նկատեցի, որ մազերս էլ, հագուստներս էլ բոլորովին չոր են:

Նույն պահին լսվեց մի անսովոր որոտ: Երկինքը կարծես փլվեց մեր գլխին: Ձայնը կրկնվեց, բայց այս անգամ ավելի ուժեղ: Կոստան գլուխը զգուշությամբ դուրս հանեց փչակից: Ես էլ իմ գլուխը դուրս հանեցի, որպեսզի նա չկարծի, թե իսկապես վախկոտ եմ:

Երկինքը մթնել էր: Հեռվից դեռ լսվում էր սարսափելի ձայնը: Հանկարծ մեր գլխավերևում հայտնվեց մի հրեղեն շերտ, որը երրորդ անգամ, ավելի ուժեղ որոտալով թաքնվեց ծառերի հետևում:

— Երկնաքար է, Կոստա,— գոչեցի ես:

Հաջորդ վայրկյանին երկնաքարը նորից հայտնվեց, բայց այս անգամ նա թռչում էր ավելի ցածր: Իսկ հետո, հանդարտ իջավ հարթավայրի

## ԱՆՄԻՏ ԱՅԾԻԿԻ ԱՐԿԱԾՆԵՐԸ

*(Սկիզբը տե՛ս «Պիոներ» №№ 3, 4, 5, 6, 7)*







Ավազոտ փոփով
Քայլում է, խորհում.
— Գրիպ չի՞մ արդյոք,
Այնպե՞ս եմ դողում:

Տեսավ այծիկը
Դաշտում մեծ մի գունդ.
— Օդապարիկ է,—
Որոշեց իսկույն:

Զինվորներն ասին.
— Թողեք, այծ — աղա:
Այծն ասավ՝ հա՜գի՜վ
Ես Լուսնից փախա,

վրա, մեր թաքստոցից ոչ այնքան հեռու...

Տեսնելով, որ թիկնոցների մեջ կծկված մարդիկ սկսեցին վազել դեպի երկնաքարը, մենք էլ դուրս եկանք ծառի փչակից և հետևեցինք նրանց օրինակին: Մենք այդ անծանոթներից ավելի շուտ տեղ հասանք: Օդի հետ ունեցած շփման հետևանքով երկնաքարը շիկացել էր: Կոստան այնքան մոտեցավ, որ ես վախեցա, թե հանկարծ կայրվի: Բայց նա կարծես չզգաց շիկացած մարմնի ջերմությունը և շրջվելով դեպի ինձ, ասաց.

— Միջմոլորակային նավ է: Երևի բոլորովին օտար աշխարհից:

Դա անսպասելի և համարձակ հայտարարություն էր...



Գ.

Մի քանի րոպե անց, երբ միջմոլորակային նավի մոտ արդեն մի հսկայական բազմություն էր հավաքվել, հանկարծ նրա դուռը բացվեց, և բոլորը ակամայից հոգոց հանեցին:

Լուսարձակներն ուղղվեցին դեպի դուռը: Ես նկատեցի, որ կինոխրոնիկայի աշխատողները անմիջապես գործի գցեցին իրենց ապարատները:

Շուտով հարթակի վրա հայտնվեց բարձրահասակ ու տարօրինակ հագուստով մի մարդ: Այո, նա ճիշտ այնպիսին էր, ինչպես երկրի վրա ապրող բոլոր մարդիկ: Ուներ երկու ձեռք, երկու ոտք, աչքեր, քիթ ու ականջներ: Միայն թե նա դարչնագույն էր: Ես ու Կոստան համոզված ենք, որ նման գույն չունեն ոչ նեգրերը, ոչ բուշմենները, ոչ զուլուսները և ոչ էլ ամերիկյան հնդիկները:

Բազմությունը սկսեց աղմկել: Ես նոր միայն գլխի ընկա, որ մենք ազատ կարողանում ենք անցնել մարդկանց մարմնի միջով և բնավ չէինք նեղվում: Մի պահ նույնիսկ ես նկատեցի, որ մի հաստլիկ, ակնոցավոր մարդու մարմնի մեջ եմ կանգնած: Բայց նա ոչինչ չէր զգում: Ես ժամանակ չունեցա այդ մասին Կոստային հայտնել:

Դարչնագույն մարդուց հետո միջմոլորակային նավից դուրս եկան ևս երեք հոգի:

Հանկարծ հարթավայրից բոլորը չքացան: Ես ապշած նայեցի Կոստային:

Մի քանի պահ ամեն ինչ թաղվեց խավարի մեջ:

Երբ նորից շրջապատը լուսավորվեց ես տեսա, որ գտնվում ենք մի մեծ ու անծանոթ քաղաքի փո-



Վազ տվեց կրկին
Նա դեպի անտառ,
Որ ծառի տակին
Առնի քիչ դադար։



Բայց հանկարծ՝ թրա՜խկ.
Լսվեց իր մոտից,
Վախից վեր թռավ
սիրտը վախկոտի։



— Հե՜յ, ո՞վ կա մոտիկ,
Օգնությա՜ն հասեք...
Նորից զույգ ոտքին
Ջոր տվեց, վազեց։

գոցներից մեկում... Անծանո՞թ... Ո՛չ, իհարկե, ո՛չ: Ահա քաղաքամերձ լճակը, ուր մենք Կոստայի հետ հաճախ էինք գնում լողալու: Ահա և այն գործարանի ուրվագծերը, որտեղ մենք որոշել էինք աշխատել հենց որ դպրոցն ավարտեինք: Ահա, վերջապես, Լենինի հրապարակը... Այդ քաղաքը Երևանն էր...

Բայց որքա՜ն բան էր փոխված... Նոր տներ, թաղամասեր, զբոսայգիներ...

— Նայի՛ր, մեքենանե՛րը,— գոչեց Կոստան:

Փողոցով դեպի վեր էին սլանում տարօրինակ ձևի երկու ավտոմեքենա, որոնք ոչ «Վոլգա» էին և ոչ էլ «Չայկա»: Մենք պարզապես չգիտեինք, թե ինչ մեքենաներ են դրանք:

— Դարչնագույն մարդկանց են տանում,— ասաց Կոստան և առանց երկար-բարակ մտածելու, մենք սկսեցինք վազել ավտոմեքենաների ետևից:

Սակայն այդ րոպեին մեր առաջը կտրեց բեղերով



և վանդակավոր կտորից բաճկոն հագած մի մարդ ու խիստ ձայնով զգուշացրեց.

— Երիտասարդնե՛ր, մի խանգարեք: Գնացեք այն ծառի տակ:

Մենք իրար նայեցինք:

— Գնացեք, գնացեք,— ավելի մեղմ ձայնով ասաց անծանոթը:

Ես ու Կոստան նստեցինք ծառերից մեկի տակ ու ափսոսանքով նայեցինք աստիճանաբար հեռացող ավտոմեքենաներին:

Քիչ հետո նորից մթնեց: Հաջորդ վայրկյանին մենք արդեն հիանալի կահավորված սրահի մեջ էինք: Դարչնագույն մարդիկ էլ էին այստեղ: Ինչ-որ տարօրինակ ապարատի օգնությամբ, նրանք զրուցում էին ալեխառն մորուքով մի ծերունու հետ:

Դ.

Նրանք եկել են օտար մոլորակից,— ասացի ես:

— Սպասիր, մի խանգարիր,— ընդհատեց ինձ Կոստան:— Չե՞ս տեսնում, նրանք խոսում են: Թող լսենք...

— Միևնույն է, ոչինչ չենք հասկանա,— ասացի ես:— Իհարկե, չենք հասկանա: Չէ՞ որ այդ դարչնագույն մարդիկ բոլորովին օտար մոլորակից են:

Ես քեզ ասում եմ՝ կհասկանանք:

Ես սկսեցի ականջ դնել նրանց խոսակցությանը: Պարզվեց, որ փոքրիկ ապարատը հիանալի կերպով տիեզերական հյուրերի լեզուն թարգմանում է հայերեն:

Դարչնագույն մարդկանցից մեկը պատմում էր, թե ինչպես իրենք արդեն տասը ՆԻԳԱ է, ինչ դուրս են եկել տիեզերական ճանապարհորդության: Հետո մենք գլխի ընկանք, որ Նիգան՝ դա դարչնագույն մարդկանց լեզվով նշանակում է «տարի»: Իսկ նրանց մեկ տարին հավասար է մեր երեք տարվան: Ուրեմն նրանք երկրի ժամանակով երեսուն տարի առաջ հրաժեշտ են տվել իրենց մոլորակին:

Նրանք շարունակում էին զրուցել: Հետո կարծես ամեն ինչ կորավ մշուշի մեջ: Արտասովոր երևույթներից մեր ստացած տպավորությունները հոգնեցրին մեզ, և ես զգացի, որ աչքերս ինքնաբերաբար փակվում են:



Այստեղ էլ ահա
Գայլը անտառի,
Անմիտի վրա
Նետվեց կատաղի.



Այծիկը ծլկեց
Ճչալով՝ վա՜յ ինձ,
Բայց նրան փրկեց
Միածանը ջինջ...



Նա վեր բարձրացավ
Կամրջով այդ լույս,
Գայլը ետ դարձավ՝
Քաղցած ու անհույս.



## Է.

Ես զարթնեցի մի ահավոր աղմուկից: Մենք նորից գտնվում էինք ընդարձակ հարթավայրում: Արևը դեռ չէր ծագել: Սակայն շրջապատը լուսավորված էր հզոր լուսարձակներով: Հարթավայրի կենտրոնում գտնվում էր մեզ արդեն ծանոթ միջմոլորակային նավը:

— Կոստա,—գոչեցի ես:—Դարչնագույն մարդիկ կարծես թե պատրաստվում են հեռանալու երկրից:

— Ի՞նչ...

Ես նոր միայն նկատեցի, որ Կոստան նույնպես քնով էր ընկել:

— Դարչնագույն մարդիկ հեռանում են,—կրկնեցի ես:

Իսկ միջմոլորակային նավի փքանցքներից ժայթքում էին կրակե հրակարմիր լեզուները: Նոր ծագող արևը դժգունել էր այդ լույսի առաջ: Նավի շարժիչների աղմուկը տարածվել էր ամբողջ հարթավայրով մեկ: Նա միանգամից պոկվեց տեղից և քիչ հետո երկնակամարի վրա երևում էր միայն մի փոքրիկ կետ:

Շրջապատը նորից մթնեց: Իսկ մի քանի րոպե անց, մենք նորից հայտնվեցինք Կանաչ բացատում:

Ես տարակուսած նայեցի Կոստային: Նա տրորում էր աչքերը և ժպտում հիմար մի ժպիտով...

— Գնանք: Արդեն ուշ է: Տես, արևն էլ մայր է մտնում:

Մենք լուռ վեր կացանք և դանդաղ քայլերով դուրս եկանք Կանաչ բացատից: Հևալով բարձրացանք տրոլեյբուս: Տեսնելով ազատ նստարանը, ես շտապեցի նստել պատուհանի մոտ:

Տրոլեյբուսը շարժվեց:

Տոմսավաճառը մոտեցավ մեզ... Հետո երկու տոմս պարզեց Կոստային:

— Ես... Մենք...—Կոստան շփոթվեց, ձեռքը տարավ գրպանը, թեև այնտեղ ոչ մի կոպեկ չկար և անօգնական հայացքով նայեց ինձ:

— Վ․երցրու՛, վերցրու՛...

Կոստան վերցրեց տոմսերը և զարմացած նայեց ինձ: Մենք երբեք այդպիսի տոմսավաճառ չէինք տեսել:

Հանկարծ մեր հետևի նստարանին նստածներից մեկը ծիծաղեց և հարվածեց Կոստայի ուսին:

— Բարև, երիտասարդ:

Մենք ետ նայեցինք: Ինժեներն էր: Ես անմիջապես գուշակեցի, որ տոմսերը նա էր վերցրել:

— Շնորհակալություն,—շարունակեց ինժեները,—լավ է, որ ինձ հայտնեցիր Կանաչ բացատի կինոֆիլմի մասին:

—Ես...Ես չեմ...

— Ձայնիցդ անմիջապես ճանաչեցի,—ասաց ինժեները:—Դե, ֆիլմը դուր եկա՞վ:

— Ի՞նչ ֆիլմ,—տարակուսած հարցրեցի ես:

— Բացատում ցուցադրվող ֆիլմը:

Ես ու Կոստան իրար նայեցինք: Միշտ, երբ մենք զարմանում ենք, նայում ենք իրար:

— Ա՜խ, դուք չգիտե՞ք,—հարցրեց ինժեները:—Կանաչ բացատում ցուցադրվում էր «Դարչնագույն մարդիկ» ծավալային կինոնկարը:

— Ծավալայի՞ն:

— Այո: Փորձնական նկար էր: Ես ինքս էլ մասնակցել եմ այդպիսի կինոնկարների ստեղծման աշխատանքներին: Պատկերացնու՞մ եք... Առանց էկրանի: Այսինքն՝ նկարները չեն ստացվում մի հարթության վրա:

— Այդ ինչպե՞ս:

— Ինչպե՞ս... Այ, այնպես, ինչպես կրկեսը... ֆիլմի կադրերը պրոյեկտվում են օդի մասնիկների վրա: Մի քանի ապարատներով ցուցադրելիս՝ այնպիսի տպավորություն է ստեղծվում, որ կարծես դու էլ մասնակցում ես ֆիլմին: Այժմ հասկացա՞ր... Ահա, մենք կարծեմ այստեղ պետք է իջնենք...

...Երբ մենք պատրաստվում էինք իրարից բաժանվել, ինժեները թեքվեց Կոստայի ականջին և կիսաձայն ասաց.

— Մյուս անգամ, Կոստա, խնդրում եմ ինձ ուղարկված հրավիրատոմսը չպատռես: Եթե մի նոր հետաքրքիր ֆիլմ լինի, ես ձեզ անպայման կտանեմ: Ափսոս դուք կեսից քնեցիք և չիմացաք, որ դարչնագույն մարդկանց հետ դեպի հեռավոր մոլորակ մեկնեց մեր խիզախ ճանապարհորդներից մեկը:

— Առավոտյան շուտ էինք զարթնել,—արդարացավ Կոստան:

— Մյուս անգամ չենք քնի,— ավելացրի ես:

# ԱՌՀԱԾ „ԿԱՆԱՉ ԱՓԻՆ"

ՎՍԵՎՈԼՈԴ ԿՐԱՎՉԵՆԿՈ

(Բելոռուս գրող)

Չգիտեմ ինչպես է ուրիշ վայրերում, բայց «Կանաչ ափ» ճամբարում պիոներներն ուրախ են ապրում: Ամեն օր նրանք նոր զբաղմունք ունեն, նոր հետաքրքրական արկածներ: Մեկ նրանք արշավի են գնում անտառները ու դաշտերը, վրաններ են խըփում անտառում, հավաքում են մրգյուններ և բույսերի հավաքածուներ, գիշերում խարույկի մոտ. մեկ նավակով ճանապարհորդում են գետով, մեկ խաղում են սպորտային հրապարակում. մեկ կարթերը ձեռքներին, շարվելով գետի երկայնքով, մըրցում են, թե ով ավելի շատ մանրածածան և պերկես կբռնի: Դուք հիացե՞լ եք այն տեսարանով, երբ հարյուրից ավելի ձկնորսներ, հետևելով կարթախըցանիկների կարմիր գլխիկներին, «մարտական» պատրաստությամբ, սառչում են իրենց կարթերի վրա, պատրաստ, որ երբ կարթախցանիկը շարժվի, բռնեն և ափ հանեն փայլուն, թփրտացող ձուկը: Իսկ որքա՜ն ծիծաղելի էր, երբ մի անգամ այդպիսի մրցումների ընթացքում, երկրորդ ջոկատի մի աղջիկ ջրից մանրածածանի փոխարեն հանեց մեծ աչքերով մի հսկայական գորտ, որ աչք էր տնկել որդի վրա: Իսկ դուք փորձած կա՞ք այն սննդարար, անուշահամ ձկնապուրը, որ երեկոները պատրաստել են պիոներները:

Ահա վերջերս էլ այդ ճամբարում մի ուրախ դեպք պատահեց... Ճիշտ է, հեշտ է այժմ ասել ուրախ: Իսկ եթե արդարացի լինենք, ապա Տոլիկի և Անդրեյկայի համար այդ պատմության մեջ ուրախ բան քիչ կար, իսկ ավելի շուտ, բոլորովին ուրախ բան չկար: Ի՞նչ ուրախության մասին խոսք կարող էր լինել, երբ այն հսկա, կատաղի լողոն հողմի պես քշեց նրանց փոքրիկ նավակը, ինչպես մի թեթև փետուր, և...

Բայց սպասեցեք,—եթե պատմում ենք, ապա պետք է ամեն ինչ հերթով լինի: Ամեն բան սկըսվեց նրանով, որ երկու պիոներ՝ Տոլիկը և Անդրեյկան, ժամանելով «Կանաչ ափ», ծանոթացան տեղական մի ձկնորսի, ձկների հայտնի մասնագետ Կուզմա Զյազուլյա պապի հետ: Այդ Զյազուլյայի ձկնորսական փառքը տարածված էր ամբողջ գետով մեկ՝ Տուրովից մինչև Նորովլյա: Նրա մասին անհավատալի պատմություններ էին պատմում: Ասում էին, օրինակ, որ ձուկը Զյազուլյա պապի կարթն էր ընկնում, նույնիսկ այն ժամանակ, երբ ուրիշներինը անգամ կտցել չէր ուզում և, որ նա տուն էր բերում օրական մի փութ բրամ, երբ մյուս ձկնորսները չէին կարողանում նույնիսկ մի նիհարիկ մանրածածան բռնել:

Չգիտենք ինչպես, ծեր Զյազուլյան՝ տարված նրանց խիզախությամբ, ճարպկությամբ, չանցած երեք օր, մեր բարեկամների հետ խիստ մտերմացավ: Եվ ահա այդ հայտնի ձկնորսը, օրինակ, երեկոյան պատմեց երեխաներին մի գաղտնիք, որը նույնիսկ տեղական մարդկանցից քչերը գիտեին: Ճամբարից ոչ հեռու՝ գետը կտրուկ շրջադարձ էր կատարում, և այդտեղ կազմվում էր զառիթափ, իսկ ներքևում՝ ջրափոս, հավանորեն քսան մետր խորությամբ: Ոչ մի տեղ գետում այդպիսի խորություն չկա, ինչպես այդ զառիթափի մոտ: Ջուրը այնտեղ մուգ է և ամբողջ ժամանակ կարծես եռում է, պտտվում է, ետ դառնում: Եվ ահա Զյազուլյա պապը պատմում էր մեր բարեկամներին, որ իբր այդ ջրափո-



Երբ ծիածանի
Կատարին հասավ,
Ոնց սահարանից
Նա ցած սլացավ,



Շրջեց հինգ տարում
Աշխարհը արար,
Ու Չինաստանում
Հոգնած կանգ առավ:



Բռնծի արտե՞ր
Ու անտա՞ռ թեյի...
Հասավ նա արդեն
Պալատին-թեյնիկ:



սում, արդեն տարիներ շարունակ ապրում է մի հսկայական լոքո, լոքո-արքան, ամբողջ գետի տիրակալը։ Այդ լոքոն կշռում է ոչ ավել, ոչ պակաս, ուղիղ տասը փութ և այնպիսի ուժ ունի, որ պոչի մի հարվածով կարող է մարդ սպանել։ Ջյազուլյա պապը գանգատվում էր, որ այդ սատանայական լոքոն հալածում և ոչնչացնում է գետի ձկներին, իսկ վերջին տարիներս այնքան է լպիրշացել, որ արդեն սկսել է ընկնել գյուղական բադերի ետևից, որոնք անզգուշաբար լող են տալիս ջրափոսում։

Ժիր Անդրեյկան զարմացավ. թե ինչո՞ւ պապը չի բռնում գետի այդ գիշատչին։ Բայց ծերունի Ջյազուլյանի, ի պատասխան, միայն դառնորեն օրորեց գլուխը. նա երբ ջահել էլ է եղել, չի համարձակվել այդպիսի հանդգնություն կատարել, իսկ այժմ, ծերության օրերին թուլանալով, առավել ևս չի հանդգնի։ Պապն ավելի շուտ կհամաձայներ դատարկ ձեռքով դուրս գալ գայլի դեմ, քան կփորձեր իր ուժերը չափել գետային այդ լայնաբերան ավազակի հետ։

Եթե Ջյազուլյա պապը գիտենար, որ տղաներին ինչ գործի է մղում իր պատմածով, ապա, ի՛հարկե, նույնիսկ այդ լոքոյի մասին ծպտուն էլ չէր հանի։ Բայց պապն անտեղյակ էր այդ բանին և որքան ավելի շատ էր նա սարսափելի ուժ վերագրում գետային գիշատչին, այնքան ավելի էին եռում տղաները հետևելու և լոքոյին բռնելու ցանկությամբ։ Դա հանդուգն և վտանգավոր դիտավորություն էր, բայց այդպիսին էին մեր տղաները՝ Տոլիկը և Անդրեյկան։

Չպետք է կարծել, որ նրանք ինչ-որ գլուխգովան-դատարկախոսներ էին։ Երկուսն էլ ուսման գերազանցիկներ էին, երկուսն էլ լավ ֆիզկուլտուրնիկներ; իսկ Անդրեյկան նույնիսկ նվաճել էր դպրոցի դահուկային վազքի չեմպիոնի ալ մայկան։

Մեծացել էին նրանք գետի ափին գտնվող գյուղում և ձկնորսական գործից քիչ-միչ հասկանում էին։ Կարճ ասած, եթե նրանք գործի ձեռք զարկեին, ապա երբեք-կիսանճանապարհին չէին կանգնի։

Մենք այստեղ մանրամասն չենք պատմի, թե ինչպես տղաները սկզբից մի քանի երեկո շարունակ զառիթափի վրայի ուռուտում թաքնված, նստում էին և ամեն մի ճողփյունի հետ հետևում ձկանը և սպասում, թե ջրի մակերեսին չի՞ երևա արդյոք հսկայական լոքոն։ Ի վերջո նրանք, իսկապես տեսան ա՛յն, ինչից հուզված խփեցին նրանց սրտերը,—ձուկ չէր, այլ ինչ-որ մի հրեշ, ավելի շուտ նման կաղնու գերանի։ Դուրս լողաց նա ջրի երեսը, շուռ եկավ, իսկ հետո պոչով հարվածեց, և ցայտերը թռան մինչև տղաները։ Հետո բարեկամները պապից զգուշորեն, խորամանկությամբ իմացան լոքոների որսի հնարները։ Ճամբարի արհեստանոցում պատրաստեցին ինչ-որ հատուկ կառուցվածքի պողպատե եռատամ կեռիկ, ոլորեցին և խեժ քսեցին այդ կեռիկի լարին, սարքեցին բումերանգի տեսքով, հատուկ փայտե պլըտան, որով ջրում ձկնորսները լոքոյին հրապուրում են դեպի խայծը, խնդրեցին Ջյազուլյա պապի նավակը։

Այդ որսի ամբողջ նախապատրաստումը երեխաները կատարում էին գաղտնի և, երբ մի անգամ, երեկոյան դեմ նրանք ափից դեպի խորհրդավոր



Խեղճը ի՞նչ անի՝
Ելավ նրա դեմ
Ջինումաչինի
Արքան խստադեմ։



— Քո էդ գեղեցիկ
Մորուքի համար՝
Կլինես, Այծիկ,
Դու ինձ մոտ համհարզ։



Քայլում է արդեն
Նա շքեղ հագած,
Արքայադստեր
Սերը գրաված։

(Շարունակելի)



Նկ. Ա. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

ջրափոսը նավարկեցին, ճամբարում ոչ ոք գլխի չընկավ, թե ինչ բան էին մտածել խիզախ տղաները։

Հուլիսյան խաղաղ, տաք երեկո էր։ Անշարժ գետի հարթ հայելու մեջ երևում էին ջրի վրա կախված ուռենիները։ Արևը իր փափուկ, ոսկյա ճառագայթներով խաղալով ալիքների հետ, հետզհետե ցած էր իջնում։ Երեկոյան՝ դեմ, ամբողջ բնությունը լռել էր։ Մտածկոտ ու խաղաղ, կարծես ինքն էլ հետաքրքրվում էր, թե ի՞նչ կլինի հետո...

Իսկ մինչ այդ, երեխաները դանդաղ մոտենում էին ջրափոսին։ Նրանք նախապատրաստվել և նախատեսել էին մինչև վերջին մանրուքը, նույնիսկ փոքրիկ կացինը ընկած էր նավակում, որ եթե պետք գա, անհնազանդ գիշատչի գլխին հարվածելով հանգստացնեն նրան։ Տոլիկը նստել էր նավախելին և թեթև քշում էր նավակը, իսկ Անդրեյկան, պողպատե կեռիկի վրա մի մեծ կտոր թարմ, անուշահամ միս ամրացնելով, ցույց էր տալիս, թե ուր պետք է լողալ։ Տղերքը գետով բարձրացան ջրափոսից վեր, իսկ հետո լռքո ձկան բնակատեղին, գնացին հոսանքի ուղղությամբ։ Անդրեյկան իր ձկնորսական սարքը համարյա մինչև գետի հատակն էր իջեցրել և սկսել պլոտտանով ռիթմիկ կերպով չմփացնել ջրին. Չըմփ, չըլմփ-չըլմփ, չըլմփ-չըլմփ...

Այդպես դանդաղորեն նրանք լողացին ջրի վրա մի անգամ էլ, բարձրացան ջրափոսից վեր և նորից իջան հոսանքով։ Համբերատար կերպով նրանք շատ անգամ քշեցին նավակը, ջրի մեջ իջեցրած գայթակղիչ խայծը, ծայրին՝ կեռիկը։

Եվ հանկա՛րծ...

Գուցե, ինչ-որ մեկին ճշմարիտ չթվա, ինչ որ կատարվեց հետագայում, դրա համար էլ, մենք միանգամից այդպիսի չհավատացողներին կուղարկենք «Կանաչ ափ», որ Պրիպյատի վրա է.—Գնացեք, հարցրե՛ք, այնտեղ դեռ այսօր էլ այդ հիշարժան դեպքի վկաները կան։

Հանկարծ ինչ-որ բան ուժեղ ձգեց լարը և այնպես ուժգին, որ նույնիսկ նավակը ջրի վրա տատանվեց։ Անսպասելիությունից Անդրեյկան վեր թռավ և ձեռքից բաց թողեց պլոտտանը։ Ձեռքերով խեժած լարը ամուր բռնած, նա նիշտն ասած, նույնիսկ վախեցավ, զգալով առաջին ցնցման ուժը։ Տոլիկը ձեռքից թիակը բաց չթողնելով, լռեց նավախելի վրա։

Իսկ հետագա դեպքերը տեղի ունեցան այնպիսի թափով, որ նույնիսկ դժվար է վերապատմել։ Նավակը ցնցվում էր նորից ու նորից և ամեն անգամ տատանվում այնպես, որ սկսեց եզրով ջուր վերցնել։

— Բա՛ց թող,—գոչեց Տոլիկը։

Բայց Անդրեյկան դեռ չէր կատարել ընկերոջ խորհուրդը, երբ լարը ձգվեց, և հնազանդ նավակը գետի մեջ անասելի արագությամբ սլացավ։ Տոլիկը թռավ դեպի Անդրեյկան և նույնպես բռնեց լարը՝ ոտքերով հենված նավակի կաղնե կողերին։ Տղաները ուժերը լարած դիմադրում էին։ Նրանք մտածում էին միայն, թե ի՛նչ սարսափելի ուժ ուներ իրենց բռնած հրեշը, եթե գետի վրա այդպիսի թեթևությամբ էր տանում մեծ նավակը։

Նավակը մինչ այդ, գետի երկայնքով դեպի ցած էր սլանում։ Ահա ճամբարային վրաններն էլ սպիտակեցին, և պիոներները երևացին ափին։ Գոնե ճամբարի պետը՝ Իվան Անդրեևիչը, նրանց չնկատեր, տղաները ախր չէին նախազգուշացրել նրան ոչ մի բանի մասին։

Հանկարծ լարը միանգամից թուլացավ և սկսեց իջնել հատակը, իսկ մի ակնթարթ հետո նավակը նորից ձգեց այնպիսի ուժով, որ տղաները հազիվ գլուխկոնծի չտվին ջրի մեջ։ Նավակը կողերից կիսով չափ լցվեց ջրով։ Տոլիկը նետվեց նավակը դատարկելու։ Կատաղած լոքոն այս ու այն կողմն էր նետվում, ձգում էր նավակը մեկ ետ, մեկ առաջ, ապա նորից իջնում գետի երկայնքով։

Եվ, այնուամենայնիվ, ինչքան էլ սարսափելի էր զգալ, որ ակամա խաղալիք ես դարձել կույր և չար ուժի ձեռքերում, տղաները լարը բաց չթողին։

«Թող հոգնի,—մտածեց Անդրեյկան.—կտանջենք նրան, իսկ հետո կսպանենք»։ Լողալով մի կիլոմետր, լոքոն սանձված ձիու պես նորից սկսեց նետվել մի կողմ։

Է՜խ, խելագար գիշատիչը տղաներին լավ վախեցրեց։ Ամեն մի մեծահասակ չէր համարձակվի նստել նավակում, որին այդպիսի սատանա էր լծված։

Տագնապահար նետվելով դես ու դեն, լոքոն նորից նավակը տարավ դեպի ճամբար։ Այս անգամ պիոներները ուշադրություն դարձրին մի տարօրինակ տեսարանի վրա. գետի վրայով արագ սլանում էր ոչ ոքի կողմից չքշվող նավակը, իսկ երկու պիոներ նստել էին նրա մեջ և ամբողջ ուժով բռնել էին լարից... Թե ի՞նչ ուժ էր քաշում նավակը, բոլորովին անհասկանալի էր։

Լոքոն մինչ այդ, սկսեց թուլանալ։ Ավելի հաճախ էր լարը թուլանում, տղաները սկսեցին կամաց-կա-

մաց որսը ձգել նավակի կողմը։ Ձգտելով ազատվել կեռիկից, գիշատիչը նետվեց գետի լայնքով մեկ։ Բայց այդ էլ նրան կործանեց։ Հենց որ նավակը մոտեցավ ափին, Անդրեյկան հրամայեց. ընկերոջը.

Ուռենուց բռնի՛ր։

Տոլիկը երկու ձեռքով կպավ հաստ ուռենուն, և նավակը կանգնեց ափի մոտ։ Լոքոն դեռ երկար այս ու այն կողմն էր նետվում, և դեռ տղաները շատ չարչարվեցին։ Բայց ավելի ու ավելի թուլանում էր գիշատիչը, և Անդրեյկան լարը ավելի ու ավելի էր ձգելով մոտեցնում։

Ափ վազեցին պիոներները, վազեցին եկան և՛ ջոկատավարները, և՛ ինքը՝ Իվան Անդրեևիչը, և՛ նույնիսկ Ջյագուլյա պապը։ Ծեր ձկնորսը իմանալով, թե ինչ է կատարվում, գլուխը զարմանքից բռնեց, բայց արագ ուշքի եկավ և հանձն առավ գործերի հետագա ընթացքի ղեկավարումը։

— Ձգեցե՛ք, թողե՛ք.... Ձգե՛ք նրան, չարքին...

հուզված կարգադրում էր նա այնպիսի ռազմատենչ տեսքով, կարծես գունդ էր ղեկավարում պատերազմի դաշտում։ Եվ երբ ափին մոտ երևաց լոքոյի սև սարսափելի գլուխը, պապը միանգամից փոքրիկ կացնով ջախջախեց գիշատչի գանգը...

Ասենք ճշմարտությունը, ջրափոսի այդ տիրակալը, ինչպես որ հավատացնում էր Ջյագուլյա պապը, տասը փութ չէր կշռում, այլ ընդամենը ութսուն կիլոգրամ էր։ Բայց դրա համար պապին մենք չենք կշտամբում. նա ախր աչքի չափով էր կշռել, իսկ հայտնի է, որ այդպիսի դեպքերում ձկնորսների կամ որսորդների աչքը չափազանցնում է։

... Է՜խ, ուրա՜խ, ուրախ են ապրում պիոներները «Կանաչ ափ» ճամբարում։ Ինչպիսի՜ արկածներ ասես չեն լինում այնտեղ։ Իսկ եթե պատմածիս չեք հավատում, ինքներդ եկեք ճամբար. Իվան Անդրեևիչը, ծեր առաջին ցանկությամբ ցույց կտա լոքոյի երկար բեղերը, որոնք որպես թանկագին ավար պահվում են ճամբարում։




ՊՐԵՄ ՉԱՆԴ

Երբ ես ծառայում էի շոգենավի վրա, մի անգամ ինձ հաջողվեց լինել Կոլոմբոյում։ Ես վաղուց էի երազում այցելել այդ վայրը, ցանկություն ունեի տեսնել Ռավանայի արքայանիստը[1]։ Մեկնելով Կալկաթայից, շոգենավը Կոլոմբո հասավ յոթերորդ օրը։ Այդ քաղաքում ապրում էր իմ ընկերներից մեկը։ Այնտեղ նա աշխատում էր ֆաբրիկաներից մեկում։ Ես նախօրոք նրան նամակով հայտնեցի իմ մոտալուտ գալստյան մասին։ Բարեկամս նավահանգստում մեծ ուրախությամբ դիմավորեց ինձ, և մենք որոշեցինք առանց ժամանակ կորցնելու ուղևորվել քաղաքի տեսարժան վայրերը։

Քանի որ մեր շոգենավը պետք է մի քանի օր կանգներ նավահանգստում, ես կապիտանից չորսօրյա արձակուրդ վերցրի։

Սկզբում մենք գնացինք ընթրելու։ Սեղանի շուրջը խոսակցություն բացվեց տեղական սաղաֆի, խեցիների և մարգարիտների մասին։ Ընկերս ասաց.

— Մարգարիտը և սաղաֆը այստեղ ծովից են հանում։ Դրանցից մեզ մոտ կարելի է հեշտությամբ ձեռք բերել։ Բայց ես կցանկանայի քեզ այնպիսի արտասովոր իր նվիրել, որպիսին դեռ երբեք չես տեսել։

Ճիշտ է, դու երևի գրքերում դրա մասին կարդացել ես։

— Դա ի՞նչ բան է,—զարմացա ես։

— Օձի քար,— պատասխանեց նա հանգիստ։

— Օձի քա՞ր,—կրկին հարցրի ես, չհավատալով ականջներիս։—Այո, ես շատ եմ լսել այդ քարի մասին,—ասացի ես, ցանկանալով շարունակել զրույցը։—Հիշողություններ օձի քարի մասին ես հանդիպել եմ մի քանի լեգենդներում և պատմվածքներում։ Լսել եմ նաև այն, որ այդ քարի արժեքը հավասար է յոթ տիրապետության արժեքի։ Բայց իրո՞ք այդ քարը օձին է պատկանում։

— Այո, բարեկամս, դա իսկական օձի քար է։

[1] Ռավանա—հին հնդկական էպոսի՝ «Ռամայանի» հերոսներից մեկը։

Եվ երբ դու կտեսնես, կհամոզվես: Ցեյլոնի ջունգլիներում,— շարունակեց բարեկամս,—բազմանում են շուրջ հիսուն տարբեր տեսակի օձեր: Բայց այդ հիսուն տեսակից միայն օձերի մի ցեղն է իր հետ կրում լուսատու քարը: Այդպիսի օձերին մեզ մոտ անվանում են Կապլիյա: Ճիշտ է, իհարկե և այն, որ օձի քար ձեռք բերելը չափազանց դժվար է: Բայց դե գտնել, այնուամենայնիվ, կարելի է:

Դեռ վաղուց ես լսել էի, որ օձը այդ լուսատու քարը կրում է իր գլխի վրա, սակայն, ինչպես այժմ պարզվեց, դա ճիշտ չէ:

Բարեկամս ինձ բացատրեց.

— Քարը գտնվում է օձի բերանում:

— Բայց ինչպե՞ս է երևում լույսը օձի բերանից.— հարցրի ես:

Ընկերս ծիծաղեց և ասաց.

— Երբ օձին լույս է պետք, նա այդ քարը դնում է որևէ մաքուր հարթ քարի վրա, իսկ ինքը տեղավորվում է նրա դիմաց: Անգամ ամենափոքր վտանգի դեպքում նա քարը վերցնում է բերանը և թաքնըվում գիշերային խավարի մեջ: Սակայն, հայտնի է, որ հետո օձը կրկին նույն տեղն է սողում: Այդ է նրա սովորությունը: Որտեղ օձը մեկ անգամ դրել է իր քարը, նա կրկին ու կրկին այդ տեղն է գալիս: Ես ծանոթներիս ասացի, որ եթե որևէ տեղ հայտնաբերեն այդպիսի օձ, անպայման ինձ հայտնեն:

Անցավ երկու օր, երրորդ օրը, երեկոյան եկավ ընկերս և հայտնեց.

— Դե ահա՛, եղբայր, օձի քարը արդեն հայտնաբերվել է: Գնանք:

Ես արագ հագնվեցի և բարեկամիս հետ փողոց դուրս եկա: Այնտեղ մեզ սպասում էր նորությունը բերող մարդը: Նա մեզ պատմեց.

— Ես այսօր տեսել եմ, քար ունեցող օձ, նա նրանով զվարճանում է անտառում: Եթե դուք ինձ հետ հենց հիմա այնտեղ գաք, կկարողանաք քարը ձեռք բերել:

Ես ուրախությամբ ընդունեցի առաջարկությունը և մենք միասին գնացինք օձի քարի: Ահա և անտառը: Միաժամանակ մենք քայլում էինք լիակատար խավարի մեջ, դժվարությամբ անցնելով մացառների միջով: Իմ ուղեկիցը հանկարծ կանգ առավ և մատնացույց անելով, ցածրաձայն ասաց.

— Տեսեք, ահա օձը, իսկ նրա առջևում լուսատու քարն է:

Ես նայեցի այն ուղղությամբ, ուր նա ցույց տվեց: Իրոք, մեզանից ինչ-որ քսան քայլի վրա ես տեսա օձին: Նա պառկել էր գլուխը բարձր պահած, իսկ շրջակայքում ամեն ինչ լուսավորված էր: Սկզբում կարծում էի, որ այդ փայլը եկնում է սովորական անտառային լուսատտիկից, բայց այդ լույսը հաստատուն էր և հավասար: Իսկ, ինչպես հայտնի է, լուսատտիկի մոտ լույսը թարթող է, մերթ ուժեղ է,



մերթ թույլ, մերթ վառվում է, մերթ հանգչում: Ես երկար ու լարված կշռադատում էի՝ ինչպես տիրանալ այդ քարին: Վերջապես շրջվելով դեպի ուղեկիցս, շշնջացի.

— Ափսո՜ս, որ հետներս հրացան չվերցրինք, կսպանեինք օձին և քարը մերը կլիներ:

— Հրացանի ոչ մի անհրաժեշտություն չկա, պարո՛ն,— հանգիստ պատասխանեց ուղեկիցս,—սպասեք ինձ այստեղ, իսկույն կվերադառնամ:

Այս ասելով նա ինչ-որ տեղ գնաց և շուտով վերադարձավ, ձեռքում ինչ-որ բան պահած:

— Այդ ի՞նչ է,—հարցրի ես:

— Ցեխագունդ է, —պատասխանեց նա:

— Ի՞նչ եք անելու դրանով:

— Պա՛հպանեցեք լռություն և նայեք, —պատասխանեց նա շշունջով:

Ուղեկիցս անաղմուկ բարձրացավ ծառի վրա և

Նշանով առաջարկեց ինձ կատարել նույնը: Ես նույնպես ծառ բարձրացա: Այդ ժամանակ նա զգուշորեն անցնելով ճյուղի վրայով, շարժվեց այն ուղղությամբ, որտեղ ներքևում լուսավորում էր օձի քարը, և անշարժացավ ճյուղի վրա հենց այն տեղում, որտեղ պառկած էր օձը: Հետո նա անսպասելի ցած գցեց ցեխագունդը լուսատու քարի վրա: Իսկույն մթնեց: Ներքևից մեզ հասնող խոտերի և տերևների խշխշոցից կարելի էր կռահել, որ անհանգստացած օձը այս ու այն կողմն էր նետվում՝ իր քարը որոնելու: Քիչ անց այդ խշխշոցը դադարեց: Ես կարծեցի, որ օձը հեռացավ և սկսեցի ցած իջնել: Սակայն ուղեկիցս ձեռքս բռնելով ասաց.

— Հիմա չի կարելի ցած իջնել, դուք վտանգում եք ձեր կյանքը: Օձը թաքնվել է և պառկել այստեղ մոտակայքում:

Մենք երկուսով ամբողջ գիշերը նստած մնացինք այդ ծառի վրա: Հենց որ լույսը բացվեց, դիտելով շրջակայքը, մենք ծառից իջանք, ուղեկիցս ցեխը ցրեց, օձի քարը նրա տակ էր:

Ես ուրախությունից ինձ կորցրել էի:

Երբ մենք ուղեկցիս հետ տուն վերադարձանք, ընկերս հարցրեց.

— Դեհ, ինչպե՞ս է, դու ինձ հավատու՞մ ես, թե ոչ:

— Այո,— պատասխանեցի ես,— մենք, իրոք որ, օձի քարը ձեռք բերինք: Սակայն ես մինչև այժմ էլ կասկածում եմ, որ դա այն քարն է, որի արժեքը հավասար է յոթ տիրապետության արժեքին:

Ուշադրությամբ զննեցի հոչակավոր օձի քարը և գտա, որ դա թանկարժեք չէ, այլ հատուկ քարի կտոր է այն քարատեսակներից, որոնք տաքանալիս լույս են արձակում: Օձն ամբողջ օրը պահում է բերանում և այդպիսով տաքացնում այն: Գիշերը դրանով նա գնում է որսի՝ օգտագործելով քարը:

Նա դնում է իր առջև լուսատու քարը և լափում այն բզեզներին և մժեղներին, որոնք մթությունից ձգտում են այդ հանելուկային լույսը:

*Թարգմ. Ք. ՄԻՐԽԱՎՈՅԱՆ*



Նկ. Ս. ԱԼԵՔՍԱՆՅԱՆԻ



Նկ. Ձ. ԳԱՐԱՋՅԱՆԻ

# ԱՂԲՅՈՒՐ

*Մ. ՎՇՏՈՒՆԻ*

Մեր գյուղից հեռու, քարքարոտ ձորում,
Մի սառն ու հստակ աղբյուր էր ծորում:
Տխրում էր անվերջ աղբյուրը հստակ,
Լաց էին թվում կարկաչները ջինջ,
Որ ինքն աշխարհում հեռու է, մենակ,
Որ մարդ չի խմում իր պաղ ջրերից:
Դիմացը անանց լեռներ ու լեռներ,
Ծածկված կանաչ, թավ անտառներով.
Արդյոք ու՞մ համար ուրախ կարկաչեր,
Ու՞մ համար այնտեղ երգեր անխռով:
Ու՞մ պատմեր արդյոք հեքիաթն իր թովիչ,
Նրան չէր լսում անտառը ծերուկ,
Եվ կորչում էին իր ջրերը ջինջ
Ժեռ քարերի մեջ, ձորերում խորունկ:
Անցան շատ օրեր: Տարիներ անցան:
Լայն ճամփա դարձավ մի նեղլիկ կածան:
Աղբյուրը զանգակ ձորերի միջով
Մեր գյուղը մտավ խնդության ճիչով:
Ու հիմա մեր նոր, մեր խաղաղ գյուղում
Այն պաղ աղբյուրն է ուրախ ծիծաղում:

# ՄԵՐ ԿԱՐՄԻՐ աքաղաղը



Ս. ԽԱՆԶԱԴՅԱՆ

Մենք մի մեծ աքաղաղ ունեինք։ Հնդկահավի մեծությամբ այդ աքաղաղը վառ կարմիր կատար ուներ։ Կարմիր էին նրա փետուրները, ամուր ու կեռ կտուցը, նույնիսկ բարձր և ուժեղ ոտքերը։

Թեև գյուղում շատ աքաղաղներ կային, բայց բոլորին զարմացնում էր մեր աքաղաղը։ Մեր տունը եկողը կամ մեր տան մոտով անցնողը չէր կարող մի պահ կանգ չառնել ու հիացած չնայել մեր աքաղաղին։ Գլուխը բարձր պահած, արքայական կատարը ցցած՝ նա հպարտ-հպարտ ման էր գալիս մեր բակում։ Բոլոր հավերը հլու-հնազանդ հետևում էին նրան, պտտվում նրա շուրջը։

Նա հաճախ կանգնում էր մի բարձր տեղ և այնպես զիլ ու զնգուն ձայնով կանչում, որ հարևանների հավերն ու աքաղաղները մի պահ շփոթվում էին, կչկչում ու վախեցած հավաքվում իրար վրա։

Օտար հավեր ու աքաղաղներ սիրտ չէին անում մտնել մեր բակը կամ մոտենալ մեր ցանկապատին։ Մեր աքաղաղի տեսքը միայն բավական էր, որ նրանք ահից չմտնեն նրա թագավորության սահմանները։ Մեր հարևան փոքր երեխաները նույնիսկ վախենում էին նրանից։

— Ձեր որձակի ահից գայլն անգամ չի մոտենա ձեր բակին,— ասում էին մեր հարևանները։

Մեր աքաղաղով ամենից շատ ես էի պարծենում։ Ես իմ ձեռքով կուտ էի տալիս, պոկում նրա թևերին կպած խոտերն ու կոծոծները, շոյում մեջքն ու չնաշխարհիկ կատարը։

* * *

Գարնանը տատս մեր չալ հավը թուխս դրեց։ Թուխսը ճտեր ունեցավ։ Սիրունիկ, թմփլիկ ճտերը հետևը գցած, նա առաջին անգամ բնից դուրս եկավ բակ, սկսեց կեր կտցել նրանց համար, նրանց վարժեցնել մեր բակին, սովորեցնել կեր հայթայթելը։

Ես շատ ուրախ էի, որ մեր բակում էլ ճտեր կան, որոնք մեղմիկ ծվծվում էին և ջուր խմելիս փոր-

րեկ կտուցները ցցում վեր։ Բայց ամենից ուրախը մեր կարմիր աքաղաղն էր։ Նա մոտենում էր, կըտուցը քսում նրանց, գլուխն աջ ու ձախ թեքելով մեկ-մեկ տնտղում բոլորին և մի հպարտ «ծուղրուղու» կանչելուց հետո, փքվում էր և Թխսամորն ու ճտերին հետը գցած՝ նրանց զբոսանքի տանում...

Մի քանի շաբաթ հետո ճտերն արդեն կլորացել, թևավորվել էին։ Նրանցից մի երկուսը նույնիսկ սկսեցին կանչել խզված, բարակ ձայնով։

Մի օր էլ մեր բակում հետաքրքիր բան կատարվեց։ Արևոտ օր էր։ Մերոնք և մեր հարևանները բոլորն էլ գնացել էին դաշտ՝ աշխատանքի։ Ես դպրոցից նոր էի եկել ու մեր պատշգամբում նըստած մածնաբրդոշ էի ուտում։ Հավերն իրենց համար քուջուջ էին անում բակում։ Թխսամերը ճըտերը հավաքած խաղաղ կռթկռթում էր ցանկապատի տակ, իսկ մեր աժդահա աքաղաղը տիրակալի նման նայում էր հավերին ու ճտերին և ոգևորիչ ձայներ էր հանում։ Կարծես ասում էր. «Ձեզ համար հանգիստ ու հանդարտ քուջուջ արեք, ես այստեղ եմ, ո՞վ կարող է ձեր քեֆին դիպչել»։

Հանկարծ հավերն իրարով անցան։ Մի քանիսը կչկչալով փախան դեպի բույնը, մյուսները շտապեցին թաքնվել՝ ով որտեղ կարող էր։ Թխսամերը տագնապալի աղմուկ բարձրացրեց, կանչեց ճտերին։ Ցրված ճտերը վազեցին իրենց մոր մոտ։ Աքաղաղը տագնապալի ճղճղաց ու նայեց վերև...

Հենց այդ պահին օդում թևաբախում լսվեց։ Ապա ծղրտալով գնդակի պես ցած սլացավ մի գորշ բազե։ Թխսամերը զարհուրելի ճիչ արձակեց։ Ես վեր թըռա տեղիցս՝ հաստատ համոզված, որ մեր աքաղաղը հիմա բազեի բմբուլները շաղ կտա։

Բայց մեր կարմիր աքաղաղը այնպես լեղապատառ ձայն հանեց ու այնպես արագ փախավ, մտավ հավաբույնը, որ ես զարմանքից քարացա։

Չփախավ միայն Թխսամերը։ Նա թևերն ուռցրեց, վիզը ձգեց ու համարձակ կանգնեց իր ճտերի գլխավերևը։ Իսկ այն պահին, երբ բազեն փորձեց ճանկել նրա ճտերից մեկին, նա քաջաբար նետվեց նրա վրա ու փետուրկի պես եռ մղեց թշնամուն։

Բազեն նահանջեց, բայց նորից նետվեց դեպի ճտերը։ Թխսամերը օրհասական կռիվ սկսեց նրա դեմ, պաշտպանելով իր զավակներին։

Ես, որ մեր աքաղաղի անսպասելի արարքից շշմել մնացել էի պատշգամբում, խելքս ուշքի եկա ու բահը վերցնելով՝ վազեցի Թխսամորն օգնության։

Բազեն փախավ դատարկաձեռն։ Թխսամերն ըսկսեց ուրախ-ուրախ կռթկռթալ ու կտուցը գցել իր ճտերին։ Կարծես ստուգում էր, թե բոլո՞րն են անվնաս։

Բազեն հեռացավ։ Հավերը բնից մեկ-մեկ դուրս եկան։ Բնից դուրս չեկավ միայն մեր աքաղաղը։ Մյուս օրն էլ նա մնաց բնում։ Իսկ երրորդ օրը, երբ զարմացած տատս նրան քաշեց, հանեց բնից, նրա վրա այլես հալ չէր մնացել։ Նա սաստիկ նիհարել էր։ Նրա երբեմնի արքայական կատարը ճլորել, թեքվել էր մի կողմի վրա, թևերը բարշ էին ընկել, փետուրները սալարել։

— Էս որձակին ի՞նչ է պատահել,— անհանգստացավ տատս։— Չլինի՞ աչքով են տվել...

— Վեղանճար է եղել,— ասացի ես ու եղելությունը պատմեցի նրան։ Տատս չանչ արավ աքաղաղին։

— Բոյի՜ն նայեք, բոյի՜ն... Մի շան չափ բոյ ունի, բայց հավի սիրտ էլ չկա մեջը,— ասաց նա զայրացած։— Գնա դանակը բեր,— կարգադրեց ինձ։ — Բեր սրան դիր ոտքերիդ տակը, վիզը կտրի։ Մեկ է, վախն արդեն սրան սպանել, պրծել է։ Էսօր էգուց սատկելու է, դանակը բեր։

Ահա թե ինչպիսին էր մեր աժդահա աքաղաղը։

# ՄՈՒԿԸ

Հիմա էլ, երբ մեր տանը հանկարծ խոսք է բացվում մկան մասին, քեռիս ձեռքերը թափահարելով ասում է.

— Էդ անտերի անունը մի՛ տվեք։

Եվ եթե տանը հյուր է լինում, ապա շարունակում է.

—Էն, որ ես եմ տեսել իմ աչքով, ձեզանից ոչ ոք իր օրում տեսած չի լինի։ Մի տարի գնացել էինք Արաքսի ափը։ Օգոստոսի վերջերը կլիներ։ Ճանապարհը շինում էինք հենց Արաքսի ափին։ Մեծ գետ է Արաքսը։ Մի ափից որ պարսատիկով քար գցես, մյուս ափին չի հասնի։

Գետի էս կողմին ցորենի արտերն արդեն ցանել, պրծել էին։

Մի օր, գետափին նստած հաց էինք ուտում։ Առաջներս գետի ջրերն էին՝ հանգիստ ու լայն։ Մեկ-մեկ մի չոր ճյուղ կամ ընկած տերևների մի փոքր երամ էր օրորվում գետի վրա ու դանդաղ սահում առաջ... Մեկ-մեկ էլ գետը հանգիստ ճողփում էր։ Երևի ձկներ էին խաղ անում մեջը։

Հացը կերանք, պրծանք, թեկն ավինք գետի թեք ափին, որ մի քիչ հանգստանանք։ Մեկ էլ նայեմ, տեսնեմ գետի էն մյուս կեսը, ափի երկարությամբ, ամբողջովին սևացել է։ Աչքերիս չհավատացի։ Ասի՝ գուցե ամպի ստվեր է ընկել գետին։ Բայց պարզ օր էր, ոչ մի ամպ չկար երկնքում։ Գարուն էլ չէր, որ հեղեղ եկած լիներ... Աչքերս ճպճպացրի ու մեկ էլ նայեցի։ Որ նայեցի, տեսնեմ այդ երկար, սև



շերտը դանդաղ գալիս է դեպի մեր ափը։ Գետի կարմիր ջրերը սևանում էին։ Զհամբերեցի, ասի.

— Տղե՛րք, հլա մի ջրին նայեցեք, տեսեք այն ինչ հրաշք է, գետը սևանում է։

Ընկերներս նայեցին իմ ցույց տված կողմն ու բերանները մնաց բաց։ Մի տեսակ ահ ու զարզանդ ընկավ ջաններս։ Այդպիսի բան ախր ո՞վ էր իր օրում տեսած։

— Էս ի՞նչ բան է,—իրար անով հարցնում էինք մենք։

Մեր մեջ Արաքսի էդ կողմերի գյուղերից մի հասակավոր ադրբեջանցի կար՝ Իմրան անունով։ Լավ մարդ էր, շատ բան տեսած, փորձված։ Սա թե.

— Տղե՛րք, գետն անցնողը մուկ է։

Մենք նույնիսկ ծիծաղեցինք։

— Չէ՛, չէ՛ մի, է՜լ ինչ...

— Հավատա վկա, մուկ է,—երդվեց Իմրան դային։ — Հիմա կմոտենա, կտեսնեք։ Մեր արտերը նոր ենք ցանել։ Անտեր մուկը գալիս է սերմն ուտելու։ Վա՜յ... Զուլում կլինի։

Մենք նորից չհավատացինք նրան։

— Ախր, ա՛յ Իմրան դայի, բա մուկը լողալ գիտի՞ որ...—հարցրինք նրան։

— Լողալ չգիտի,—տնքաց նա,—Բայց գետն անցնելու հնարը գիտի շնչթանի սանդուղ այդ կեղտոտ արարածը։ Հիմի կտեսնեք։

Սև զանգվածը մոտեցավ մեր ափին։ Նայեցինք, տեսանք, որ Իմրան դային իրավացի է։ Գետի վրայով դեպի մեր ափն էին լողում անթիվ-անհամար մկներ... Ամեն մի մուկ բերանում մի երկար չոփ էր բռնել ու առջևի թաթիկները շարժելով՝ գալիս էր։ Շատերը չոփի տեղ հաստ ցողուններ էին բռնել ատամներով։ Այդ չոփերն ու ցողունները նրանց պահում էին ջրի երեսին։ Գետն ամբողջովին սևացել էր, բայց դեռ մկան ծայրը մյուս ափից չէր կտրվել, գալիս էին, հա՜ գալիս...

— Վա՛յ, հարա՜յ...—ծնկները տրորելով մորմոքվում էր Իմրան դային։—Մեր արտերում մի սերմ չեն թողնի, կուտեն։ Զուլում է, Զուլու՜մ...

Մենք տագնապի մեջ էինք։

Մկների երամը հասավ ափին, և ափը միանգամից սևացավ։ Այդ անիծվածները վայր գցեցին իրենց բերանների չոփերը ու վազեցին դեպի մոտակա ցելերը։ Այնքան շատ էին, որ մեկը մյուսի վրայով էր թռչում...

Շուտով գետափին այնքան ցախ ու ցողուն կուտակվեց, որ մի երկար ցանկապատ գոյացավ, էնպիսի ցանկապատ, ինչպիսին մենք ենք շինում փայտից՝ բոստանների չորս բոլորը։

Մուկն անվերջ գալիս էր։ Դրանք մեծ-մեծ, մի թզաչափ մկներ էին՝ երկար պոչերով։ Գորշ մորթի ունեին, մեջքների վրա սև երիզներ՝ գլխից մինչև պոչերը։ Իսկ փորների տակը սպիտակ էր։

Նրանք ագահորեն վազում էին դեպի ցելերը, իսկ Իմրան դային մորմոքվում էր կսկծից։

— Սով եկավ, ամա՜ն... Զուլու՜մ եղավ։ Մի տարի էլ այդ անտերը եկավ, մեծ սով եղավ...

Իմրան դայու հետ մորմոքվում էինք նաև մենք։

Նկ. Դ. ՍԱՐԳՍՅԱՆԻ



# ԱՄԵՆԱԶՈՐ ԿԱԿԱՉԸ

Երբ առաջին անգամ կակաչի նոր, վառ տեսակը Հոլանդիա մտավ, մեծ աղմուկ առաջացրեց և ցնցեց երկիրը ոչ պակաս, քան պատերազմն ու երկրաշարժը: Այն ժամանակվա կակաչը ոչնչով չէր տարբերվում իր վայրի տեսակից: Բայց նորամուծ կակաչը այնպես հրապուրեց հոլանդացիներին, որ հիմք դրեց կակաչամոլության: Այդ հանգամանքը օգտագործեցին ճարպիկ սպեկուլյանտները և դրա վաճառքից մեծ շահ ունեցան: «Ադմիրալ Լիֆկենս» կակաչի մեկ թուփը հասավ մինչև 400 ֆլորինի:

Կակաչամոլությունը մուտք գործեց նաև Ֆրանսիա: Լիլլ քաղաքի գարեջրագործներից մեկը մի թփի համար տվեց իր գարեջրի գործարանը՝ 30 հազար ֆրանկի արժողությամբ, որ շատ մեծ գումար էր այն ժամանակ:

Կակաչամոլությունը շատ չարիքի պատճառ դարձավ: Այդ համեստ ծաղկի պատճառով որքան հանցագործություններ, ինքնասպանություններ տեղի ունեցան:

Մի խեղճ կոշկակար Հաագայում աճեցրեց սև տեսակի մի կակաչ: Այդ մասին իմանալով՝ Հարլեմից եկավ կակաչագործների ընկերության պատգամավորությունը: Շատ սակարկելուց հետո, կոշկակարը համաձայնվեց այդ կակաչը վաճառել 1500 ֆլորինով: Դա մեծ հարստություն էր աղքատ կոշկակարի համար: Բայց վաճառելուց հետո, երբ իմացավ, որ նրանք պատրաստ էին նույնիսկ 10 հազարով կակաչը գնել, վշտից մեռավ:

Կակաչամոլությունը սպառնաց Հոլանդիայի բարեկեցությանը: Արհեստավորները, վաճառականները, ծովագնացները իրենց գործը թողած՝ սկսեցին զբաղվել կակաչագործությամբ, մտածելով, թե դրանով ավելի շահ կստանան:

Կակաչը մուտք գործեց նաև Անգլիա և ուրիշ երկրներ:

Կակաչամոլությունը իր հետքը թողեց նաև եվրոպական լեզուների վրա: Շատ տարիներ, իբրև թանկարժեքության ու գեղեցկության չափանիշ, կակաչ անվանեցին:



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




Խմբագիր՝ Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ





„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки, № 4

Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—07:


Շապիկը. նկ. Ն. ՔՈԹԱՆՋՅԱՆԻ


ՎՖ 50982. Պատվեր 817: Տպաքանակ 6200: Տպագրական 4,5 մամուլ: Ստորագրված է տպագրության 10/VIII 1959 թ. ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան 91: Գինը 2 ռ.



## ՉԱՅՆՎՈՐԴ-ԳԱՂՏՆԱԳԻՐ



*1. Փաթաթվող բույս, 2. Թերակղզի ՍՍՌՄ-ում, 3. ամսվա անուն, 4. Ի[illegible] [illegible]ներից, 5. թռչուն, 6. ժամանակի միավոր, 7. աշխարհագետ, 8. պետության մայրաքաղաք, 9. Նավահանգիստ համանուն [illegible] վրա, 10. ռուս նշանավոր նկարիչ, 11. լիճ Աֆրիկայում, 12. բա[illegible] մասնիկ, 13. քաղաք Շվեյցարիայում, 14. միրգ. 15. հայ մեծ վիպասան, 16. [illegible] արևմտյան Սիբիրում, 17. անգլիական անվանավոր գրող, 18. [illegible] Եվրոպայի և Ասիայի սահմանագծում, 19. պետության մայրաքաղաք, 20. թանկագին քար, 21. գետ Կամչատկայում, 22. պետություն Եվրոպայում, 23. հայ դիցաբանության հերոս, 24. Նավահանգիստ Աֆրիկայում, 25. գետ ՍՍՌՄ-ում, 26. պատնեշ, որով բարձրացնում են գետի ջուրը, 27. քաղաք Սև ծովի ափին, 28. ռեսպուբլիկա Հարավսլավիայում, 29. կղզի Արևելա-սիբիրական ծովում, 30. Հին Արևելքի քաղաք, 31. միութենական ռեսպուբլիկայի մայրաքաղաք, 32. ջրվեժ Ամերիկայում, 33. պետություն Ասիայում:*

*Չայնվորդի լուծումից հետո, եթե շրջանագծում եղած թվերը փոխարինենք համապատասխան տառերով, դուք կկարդաք մի հանելուկ:*

Կազմեց՝ Վ. ՕՀԱՆՅԱՆ

## Պատասխանում ենք

«Պիոներ» № 7

—

**ԳԱՂՏՆԱԳԻՐ «ՏԻԵԶԵՐՔ»**

1.—9, 13, 11, 14, 20, 8—Միջյուն
2.—23, 6, 19, 20, 15—Շապուհ
3.—18, 8, 7, 4, 13—ընկեր,
4.—16, 22—թև,
5.—17, 20, 1—ռուս,
6.—12, 6, 3—լավ,
7.—22, 5—էտ,
8.—10, 13—իր,
9.—19, 10, 2, 8, 4, 13—«Պիոներ»

Շրջանակներում կարդացվում է.

«Սովետական միջմոլորակային հրթիռը պտտվում է արևի շուրջը»։

**ԿԱՐՈ՞Ղ ԵՔ ԻՄԱՆԱԼ**

Հայրը բերել էր 81 տետր։

# ՃԱԽՈՐԴ ՈՐՍՈՐԴՆԵՐԸ

Տեքստը՝ Ս. ՄԿՐՏՉՅԱՆԻ

Նկ. Ռ. ՀՈՎԻՎՅԱՆԻ



Վաղ առավոտյան
Համոն ու Մոսին
Պարսատիկն առան,
գնացին որսի:



Կանգնեցին ահա
մի մեծ ծառի տակ,
Տեսան կա մի բույն՝
միջին երկու ճագ։



Ու Համոն ձգեց
պարսատիկն իսկույն...
Մոսին թե՝ մեղք են,
ինչո՞ւ ես զարկում։



Ձչսեց Համոն,
թափով արձակեց։
Քարը ետ դարավ,
գլուխը ծակեց։



— Օ՜ֆ,—հառաչեց նա,—
գլուխս դաղեց...
— Ա՜խ, շատ լավ եղավ,—
Մոսին ծիծաղեց։



Բայց Համոն ծառը
ելավ բարկացած,
Իսկ Մոսին քաշեց
նրան դեպի ցած։



Ու մեկ էլ հանկարծ
ճյուղը կոտրվեց,
Ջար տղան վերից
գետին գլորվեց։



Շրմփաց ուժգին
ու ճչաց ցավից...
Քրքջում էին
ճտերը ծառից։



Ու դատարկ ձեռքով,
տխուր ու տրտում,
Մեր ճախորդները
վերադարձան տուն։

## ՍԵՊՏԵՄԲԵՐ

*ԵՐՋԱՆԻԿ ԱԽԱԹԵԼՅԱՆ*

Աչքերի մեջ արև ու շող.
Դեմքի վրա վառ ծիծաղ.
Աշունն եկավ այնպես զրուցող
Այնպես պայծառ ու խաղաղ:

Այգիներից իմ հայրենի,
Մրգերն անուշ ժպտացին,
Աշունն ասես թռչուն լինի՝
Խաղողի ճութը կտցին:

Ծանրության տակ, տե՛ս, ծառերը,
Ծերունու պես վաստակած,
Դեպի հողն են խոնարհ թեքվել՝
Ալ բոցերով բռնկված:

Սեպտեմբերյան իմ ճոխ աշուն,
Դու լիության լույս հնձան,
Քո ոսկեզօծ այգիներում
Աշխատում ենք ժրաջան:

Կարկաչի պես առվակների
Մեր ծիծաղն է զիլ հնչում.
Ու զարթոցի զանգն է նորից
Անուշ, անուշ ղողանջում: